# ՍԵՐՈՒՆԴՆԵՐԻ ՀԱՅՐԸ

*ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ* *Նկ. Ա. ԱԹԱՅԱՆԻ*



Մենք նրանով ենք բախտավոր այսօր,
Որ դեռ չբացած մեր աչքն աշխարհում,
Արդեն ձեռքերով դու քո հայրական
Մեր ճանապարհին լույս էիր վառում:

Մենք քո պատկերն ենք գրկել հոգեբով,
Երբ օրոցքում մեր ձեռքերն ենք պարզել,
Ու երբ բացվել է մեր լեզուն թոթով,
Առաջինը քո անունն ենք ասել:

Երբ ամեն անգամ մայիսի մեկին
Մեզանից մեկին առել քո գրկում,
Փայփայել ես դու այնպես քնքշագին



Մենք նայել ենք քեզ, և ամեն մեկիս
Թվացել է, թե իրեն ես գրկում:

Մենք նրանով ենք այնքան բախտավոր,
Որ ամեն օր քո խոսքերն ենք լսում,
Որ լսում ենք քո խորհուրդները խոր
Եվ անհուն սիրով քեզ հայր ենք ասում:

Մենք նրանով ենք բախտավոր այնքան,
Որ հայր են ասում մեր հայրերը քեզ.
Նրանք, որ իրենց պիոներական
Կարմիր փողկապներն ավանդել են մեզ:

Մենք նրանով ենք այնքան բախտավոր,
Այնքան երջանիկ ու հպարտ այնքան,
Որ պարգևելով մեզ աշխարհն այս նոր,
Վստահել ես մեզ նրա ապագան:

*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԵՐԵՎԱՆԻ 67–ՐԴ ԴՊՐՈՑԻ ՖԻԶԻԿԱՅԻ ԿԱԲԻՆԵՏՈՒՄ։

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ



# ԱՌԱՋՆՈՐԴԻ ԾՆՈՒՆԴԸ

*(Հատված «ՍՏԱԼԻՆ» պոեմից)*

Գ. ԼԵՈՆԻՁԵ

*(Ստալինյան մրցանակի լաուրեատ)*

Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ

Ո՛չ բազեն էր նստել կտրին,
Ո՛չ արծիվներն էին կանչում,
Հեգ ծիտիկն էր հյուղի վերև
Սառցի ոլունքն առած՝ թռչում:

Հարևաններն իրար անցան.
— Աշխարհ եկավ՝ մի նոր տղա.
Ու վազեցին աչքալույսի՝
— Բեսո՛, աչքդ լույսով մնա:

Եվ նվերներ անհա առած
Եկան փոքրին ի տեսություն,
Դիմավորեց տատը նրանց՝
Խաղաղ դեմքին՝ ուրախություն:

❊❊❊

Աքաղաղին տուն բերեցին՝
— Թող երեխան արթուն լինի...
Տրքին ծիծեռնակ դրեցին՝
— Ժամփեն կանաչ գարուն լինի:

Սնարի տակ աղ դրեցին.
— Աղ ու հացով մեծ մարդ լինի,
Շաքարը կրծքին դրեցին՝
— Մարդկանց սիրի, զվարթ լինի:

Կիալուսնի տակ քնացրին՝
— Կյանքը զուլալ աղբյուր լինի,
Օրորոցում երկաթ դրին՝
— Անընկնելի, ամուր լինի:

❊❊❊

— Ո՞ւմն ես, ո՞ւմը, իմ անուշիկ,
Ո՞ր բնից ես, սիրո՛ւն տատրակ,
Ես քեզ համար՝ դեղի փոշի,
Դու՝ մի ողկույզ հակինթ հստակ:

**Ըստ արևելյան ավանդության, երբ մեծ մարդ էր ծնվում, նրա տան կտուրին բազեն էր նստում և օդում լսվում էր արծիվների կռինչը:**

Տղա՛ս անիր ու մեծացիր,
Քո հասակը չինար լինի.
Ականջն, ա՛յ կին, պինդ համբուրիր,
Որ հնազանդ, խոնարհ լինի:



Հին ավանդով՝ որոնեցին
Մանկան պայծառ աստղը երկնում,
Դեմքը, ձեռքը շոշափեցին,
Գուրգուրեցին սիրով անհուն:

— Դեմքով, ասին, հորն է քաշել,
Պապին, քեռուն. փա՛ռք քեզ, արև՛,
Մարդն՝ իր ցեղին, ձին՝ իր սանձին
Հետևում են դարե՛ր-դարեր:

Ու լողացրին սառը ջրում,
Թրի շուրջը երեք անգամ
Պտտեցին նրանք մանկան.
— Կրակ ընկներ քաջքը չարկամ:

Սանուց տաշած ձի բերեցին՝
— Քաջ ձիավոր թող նա դառնա.
Ջուր լցրեցին հուր կրակին,
Որ ցավ, չարիքը չհանա:

Անիծեցին չարաչք մարդուն՝
— Թող մոխրանա աչքը անարգ,
Կռծքին կպչի գնդակը սուր,
Գլխին՝ կրակ, կտրին՝ կայծակ:

Եվ խնդրեցին կապույտ երկնին
Նայել մանկան բարի աչքով,
Թող աշխարհի համար ապրի,
Բարիք բերի սուրբ վաստակով:

*Թարգմ. Ա. ԳՐԱՇԻ*

# ԱՄԵՆԱԳԼԽԱՎՈՐԸ

*Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ*

Նրանք դպրոցական ընկերներ էին, հարևաններ էին ու հասակակիցներ և, ամենակարևորը՝ սովորում էին միևնույն դասարանում, միևնույն ջոկատի պիոներներ էին:

Նրանք մեծ մասամբ միասին էին լինում, միասին գնում կինո, միասին խաղում իրենց ընդարձակ բակում: Երբեք իրար հետ չէին վիճում, որևէ կոպիտ խոսք չէին ասում միմյանց:

Միշտ լռակյաց Հայկը երբեք նման բաների առիթ չէր տալիս: Նա գնահատում էր իր ընկերոջ խելքն ու կարողությունները, վստահում էր նրան, իսկ տաքարյուն, ճարպիկ ու գործունյա Դավիթը սովորել էր Հայկի լռակյացությանը: Նրա հետ լինելիս, մենակ ինքն էր խոսում, ինքն էր որոշում, թե ուր գնալ, ինչ անել:

Դավիթը ջոկխորհրդի նախագահ էր և դասարանում ամենալավ սովորողներից մեկը: Վատ չէր սովորում նաև Հայկը:

Նրանք դպրոցում ճանաչված էին որպես մտերիմ ընկերներ: Դավիթը համեստ ու ամաչկոտ Հայկի հակապատկերն էր: Նա շատ ինքնավստահ էր և միշտ, ամեն տեղ աշխատում էր իր խոսքն առաջ տանել: Եթե փորձեիր առարկել նրան, հակառակն ասել՝ նա ժամերով կխոսեր, կապացուցեր, որ ինքն է ճիշտ, որ իր ասածը պետք է անել և ոչ թե հակառակը: Հայկը մի քանի անգամ փորձել էր դիտողություն անել Դավթին այդ մասին, բայց ո՞ւմ ես ասում, Դավիթը նույնիսկ չէր ուզում հավատալ, որ Հայկը լուրջ է խոսում:

Այդպես էլ նա առարկեց Հայկին, երբ հաշվետու ընտրական հավաքույթի գնալիս, Հայկը փորձեց ասել, թե նա շատ է չափազանցեցնում ջոկատի հաջողությունները:

— Գիտե՞ս, Հա՛յկ, դու պարզապես լավ չես հասկանում, թե ի՞նչ մեծ նշանակություն ունի սպորտը դպրոցականի կյանքում,— տաք-տաք բացատրում էր Դավիթը,— իսկ մեր ջոկատը ռայոնական սպարտակիադայում առաջին տեղը գրավեց: Ինչո՞ւ: Որովհետև մենք լավ ենք աշխատել:

— Այո՛, բայց...—Փորձեց առարկել Հայկը, սակայն Դավիթը չթողեց, որ նա շարունակի ու նորից սկսեց ապացուցել, որ Հայկը սխալվում է, որ ինքը ճիշտ է, որ իզուր են իր հետ վիճում:

Ի՞նչ խոսք, որ Հայկը նրա հետ համաձայն չէր: Նա լուռ գնում էր Դավթի կողքից նույնիսկ չլսելով նրան, իր մտքերով տարված: Դե նա Դավթին նոր չէր ճանաչում:

***

Երբ ջոկխորհրդի նախագահ Դավիթը զեկուցում էր ջոկատի կատարած մի տարվա աշխատանքների մասին, բոլորը մի տեսակ հպարտություն էին զգում: Իսկապես, ինչքա՜ն շատ բան է արված՝ էքսկուրսիաներ, մրցումներ, խաղեր ու հետաքրքրական հանդիպումներ: Ջոկատի ձեռքին է թեթև ատլետիկայի գծով ռայոնական առաջնության փոխանցիկ գավաթը: Դե այսքանն էլ քիչ չէ, իսկ Դավիթը դեռ շարունակում էր թվել: Կարծես թե վերջ չի լինելու. այնքա՜ն շատ են ջոկատի կատարած գործերը:

Բոլորի հիացմունքն այնքան մեծ էր, որ երբ զեկուցումն ավարտվեց՝ այլևս ոչ ոք չէր ուզում ելույթ ունենալ. էլ ի՞նչ խոսես, ամեն ինչ ասվեց։ Մեկը նույնիսկ տեղից բացագանչեց.

— Բավարար համարել և վերջ…։

Սուրենը, որ ղեկավարում էր հավաքույթը, շփոթվեց։ Ինչպե՞ս թե. խոսել անպայման հարկավոր է. էլ ի՞նչ հաշվետու հավաքույթ։



Եվ ահա առաջինը խոսք ուզեց Հայկը։

Հայկը ամբիոնի մոտ… Դա արդեն զարմանալի էր։ Ե՞րբ էր նման բան պատահել։ Նա գերազանցիկ էր, խելոք էր ու պարտաճանաչ, բայց արի ու տես, որ նրա ձայնը հավաքույթներում չէր լսվում։ Ասենք երբեմն լսվում էր և բոլորին հիացնում։ Բոլոր հանդիսավոր հավաքույթներին նա երգում էր։ Առանձնապես նա հաջող էր երգում «Պարտիզանականը», այն էլ Արմենի հետ։ Նրանք այնքան լավ էին երգում միասին, որ թվում էր, թե մի մարդ է երգում։ Դրանով նրանք հայտնի էին ամբողջ դպրոցում։

Բայց Հայկը ըստ էության չէր խոսում։

— Ի՞նչ խոսեմ,—արդարանում էր նա,— բոլորն էլ ասում են այն, ինչ ես կուզենայի ասել։

Այդպես էր նա։

— Սա՜ս… Հայկը պիտի խոսի,— սկսեցին իրար լռեցնել տղաները, երբ նկատեցին նրան ամբիոնի մոտ։

— Երևի պիտի երգի,— սրամտեց Հայկոբը։

— Իսկապես որ,— հեգնեց փոքրիկ, պեպենոտ Միհրանը և ինչպես համերգների ժամանակ են անում, բացագանչեց.

—«Պարտիզանակա՜նը»…

Հայկը բոլորի գլուխների վրայով լուռ նայում էր դիմացի պատին և սպասում, որ լռեն։

Եվ երբ աղմուկը դադարեց, ի՞նչ խոսք, որ նա չերգեց, բայց այն ինչ ասաց նա, ավելի քիչ չզարմացրեց ներկա եղողներին, քան նրա ամբիոնի մոտ երևալը։

— Ի՞նչ է խոսում, ի՞նչ է ասում,—շշուկով անցավ դասարանի մի ծայրից-մյուսը։ Տղաները տարակուսանքով նայում էին դասարանի ղեկավար ընկեր Արևյանի կողմը, իսկ վերջինս թեթև ժպտում էր ու դժվար էր հասկանալ, թե ի՞նչ կարծիքի է նա։

Իսկ Հայկը, ինչպես բոլոր առաջին անգամ խոսողները, մի փոքր կարմրել էր ու չգիտես ինչու անընդհատ խաղում էր օձիքի կոճակների հետ և ասածը կրկնում։

— Ի՞նչ խոսք, մենք գործ արել ենք։ Ո՞վ կարող է ժխտել… Բայց որ անկեղծ խոսենք՝ քիչ բան ենք արել։ Ախր, այժմ մենք արդեն երկու շաբաթ է դասի ենք նստած, վեցերորդ դասարանում ենք։ Բայց մի լավ նայեք. բո՞լո՞րս ենք այստեղ։ Իսկ ո՞ւր է մեր ընկերներից մեկը՝ մեր Արմենը…

Դավիթը մնացել էր զարմացած։ Նա աչք չէր հեռացնում Հայկից։ Մի՞թե այդ նա է, ամենօրյա լռակյաց Հայկը։ Եվ ինչե՜ր է խոսում… «Քի՜չ բան ենք արել»… Չէ՛, նա չի մտածում, թե ինչ է ասում…

Բայց Հայկը շարունակում էր և ամեն ինչից երևում էր, որ նա լավ է մտածել իր ասածների մասին…

— Շա՜տ բան ենք արել… Ո՞ւր է որ շատ բան ենք արել։ Մենք նույնիսկ լրիվ էլ չենք փոխադրվել… Դե ես վատ եմ խոսում, բայց

ա՛յ, ուրիշները թող նույնպես խոսեն այս մասին, գուցե ես սխալվում եմ... Ինձ թվում է, թե չեմ սխալվում. մենք կարող էինք ավելին անել։ Իսկ ջոկխորհրդի նախագահ ընկեր Դավիթ Չիթչյանը կարծես դիտմամբ, մոռացել էր, որ մենք թերություններ էլ ունենք, մեծ թերություններ... Նա մոռացել է, որ ամենագլխավորը ուսումն է, իսկ այդ հարցում մենք քիչ ենք օգնել մեր ուսուցիչներին... Այո՛...

Հայկն ամբիոնից իջավ... Բոլորը լուռ էին։ Դավիթը անհանգիստ շարժվեց և թեքվելով Սուրիկի կողմը, շշնջաց.

— Այ ընկե՜ր...

Սուրիկը չհասկացավ՝ Դավիթը դժգո՞հ է, թե ուրախ՝ ընկերոջ անկեղծության համար։ Իսկ Դավիթը ուրախ չէր։ Նա սրտանց զայրացել էր Հայկի վրա։

«Տեսավ, որ բոլորը գոհ են,— մտածում էր նա,— ինչո՞ւ փչացրեց ամեն ինչ։ Ի՞նչ ունի մտքում։ Հիմա հասկացա, թե նա ինչ ընկեր է եղել ինձ համար... Ոչի՛նչ, սրանից հետո կտեսնի»։

Սակայն Դավիթը հանկարծակիի եկավ, երբ Հայկին պաշտպանեց նաև ընկեր Արևյանը։ Ընդհակառակը՝ նա հույս ուներ, թե դասղեկը կկշտամբի Հայկին չափազանցության համար։ Իսկ ընկեր Արևյանը ո՛չ միայն պաշտպանեց նրան, այլ մի բան էլ ավելացրեց նրա ասածների վրա։

Իսկապես ջոկատը լուրջ թերություններ ուներ։

***

Դավիթն այլևս չէր լսում ելույթ ունեցողներին։ Նա կարծես երազում լիներ, չէր կարողանում գիտակցել իր վիճակը։

Ի՞նչ պատահեց... Մի՞թե Հայկն է այս ամենի պատճառը։ Հա՜յկը... Դե իհարկե նա, մինչև նրա ելույթը ամեն ինչ կարգին էր գնում։ Եվ թեև Հայկը վաղուց էր նստած իր տեղում, Դավթին թվում էր, թե նա դեռ շարունակում է խոսել։ Դե ով էլ որ խոսում է, նրա անունն է տալիս. «Ինչպես Հայկն ասաց...», «Ճիշտ էր ասում Հայկը...», «Միանգամայն համաձայն եմ Հայկի հետ...»

Այս բոլորը ջղայնացնում էր Դավթին։ «Գոնե ուրիշը լիներ, մտածում էր նա։ Թե չէ, խնդրե՛մ, ամենամոտիկ ընկերդ։ Պարզ է, որ հիմա նրան կընտրեն ջոկխորհրդի նախագահ։ Նա այնպիսի տպավորություն թողեց որ... Թող ընտրեն... Կտեսնենք, թե ինչպես կաշխատի։ Մի բան հայտնի է, որ շատ անազնիվ գտնվեց նա»։

***

Մինչ Դավիթը խորասուզված էր իր մտքերի մեջ, հավաքույթը մոտենում էր վախճանին։ Սկսեցին ջոկխորհրդի նախագահի և խորհրդի անդամների համար թեկնածուներ առաջադրել։

Դավիթը նորից լսեց Հայկի անունը և ուշադրությունը լարեց. «Նրան են ընտրում» շեշտակիորեն անցավ Դավթի մտքով։ Եվ իրոք, առաջարկեցին Հայկին, բայց նա հրաժարվեց այդ պարտականությունից և առաջարկեց Դավթի թեկնածությունը։

Դավիթը շփոթվեց. նա այսպիսի շրջադարձ չէր սպասում։ Մի՞թե այդ Հայկն էր. ի՞նչ տարօրինակ տղա է, քիչ առաջ ինչեր էր ասում, իսկ հիմա...

Այս ի՞նչ է, նորից ինքն է ընտրվում... Այդպես էլ եղավ։ Ջոկխորհրդի նախագահ ընտրվեց Դավիթը։

Սկսվեց հավաքույթի գեղարվեստական մասը։ Դավիթը վազվզում էր, աթոռներն էր դասավորում, ցուցմունքներ տալիս, բայց մտքից դուրս չէր գալիս Հայկը։ Նա անհարմար էր զգում նրան հանդիպել։ Նրան թվում էր, թե Հայկն ամեն ինչ զգացել է, գիտի։

«Ի՜նչ վատ էի մտածում ես նրա մասին, ինչքա՜ն սխալ էի ես»— մտածում էր նա։

Իսկ երբ դասասենյակում զրնգաց Հայկի հաճելի ձայնը. «Սարերով ու լայն դաշտերով...» Դավիթը սուր ցավ զգաց։

Ինչքան լավ էր հնչում այս երգը, երբ Հայկը երգում էր Արմենի հետ, իսկ հիմա... Եվ նրա շրթունքները հազիվ լսելի շշնջացին.

— Դու ճիշտ էիր, Հա՛յկ, մենք քիչ բան ենք արել։— Եվ հետո կարծես թե ինքն իրեն ուղղելով ավելացրեց,— մենք կարող էինք ավելին անել...

# ՀԵՌԱԳԻՐԸ

ՇՈՂԻԿ ՍԱՖՅԱՆ

Նկ. Ս. ՊԻՊՈՅԱՆԻ

Քանի օր է մայրիկը
Մոսկվա է գնացել,
Գնացել է, մնացել.
Էլ ո՛չ նամակ է գրում,
Ո՛չ էլ շտապ հեռագրում...



Եվ ահա՛ քեզ՝ հեռագիր,
Հենց այսօր, այս կիրակի:

Իրենց բակի կանաչում
Կանգնած՝ Լուսիկն է կանչում.
— Հեռագի՜ր, հեռագիր,
Հեռագիր է ստացվե՜լ...

Վազեց եկավ քույրիկը,
Եկավ նաև տատիկը.
— Դե շուտ բացիր, իմանանք,
Ինչքա՞ն պիտի դիմանանք...

— Ես բացել եմ, կարդացե՜լ:
— Էլ ինչո՞ւ ես խենթացել:
— Տատի՛, եթե իմանա՜ս...

— Դե բեր կարդա, ա՛յ աղջիկ,
Ո՞ւր ես վազում, կրակ չի...

Բայց Լուսիկը թուղթն առել,
Արդեն պարտեզ է թռել,
Աղմկում է ու գոչում,
Իբրև տատին է կանչում..
— Հեռագի՜ր, հեռագի՜ր,
Դե՛, հրաշք է ուղղակի:

Ձայնի վրա այդ թնդան
Եկան Մուշեղն ու Սեդան,
Հետո կանայք դրացի,
Նույնիսկ շենքից դիմացի:

Եկան շուրջը խմբվեցին,
Նրա վրա խնդացին.
— Ի՞նչ ես խառնվել, Լուսիկ ջան,
Խենթացել ես անպատճառ,
Ի՞նչ մեծ բան է, հեռագի՜ր...

Տատն էլ եկավ ու նստեց,
Նստեց, թոռանը սաստեց.
— Հոգիս ելավ, ա՛յ աղջիկ,
Դե շուտ կարդա, մի՛ տանջի:

— Լավ, կկարդամ, լուռ կացեք.
Զուր ես, տատի՛, բարկացել:

Եվ Լուսիկը խիստ հուզված
Առավ թուղթը և կարդաց.

«Հարազատներ իմ անգին,
Շնորհավորեք ինձ սրտանց՝
Բախտի համար չսպասված.
Այսօր տոնին մայիսյան
Ես մեծ ՍՏԱԼԻՆԻՆ տեսա»:

Դե, ով էլ որ ստանա
Մի այսպիսի հեռագիր,
Սիրտը նրա կթնդա
Անեզր ու խոր հրճվանքից:

# ՍՏԱԼԻՆԳՐԱԴՆ ԱՅՍՕՐ

*Մ. ՕՎՉԻՆՆԻԿՈՎ*

Օդանավը Ռոստովից թռչում է Ստալինգրադ։ Ահա նա կտրում անցնում է Ցիմլյանսկի ծովի հյուսիսային մասը և մոտ հազար մետր բարձրության վրա թռչում է Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի վերևով։ Օդանավի լուսամուտից պարզ երևում է ամբողջ ջրանցքը, որն անցնում է վերջերս դեռ ամայի ավազոտ բլուրների միջով։ Ներքևում տարածված են հայելու պես ջինջ ջրամբարները՝ Կարպովսկին, Բերեսլավսկին, ապա Վարվարովսկին։

Միալար ու համաչափ հնդում են օդանավի մոտորները։

Ահա առջևում շողաց լայնահուն Վոլգայի ոլորանը։ Կաթնագույն մշուշի միջից հետզհետե ավելի պարզ գծագրվում է հերոս քաղաքը։ Այն վաթսուն կիլոմետր երկարությամբ ձգվել է Վոլգայի աջ ափին։

Մեր օդանավը պտույտ է գործում քաղաքի հարավային մասի՝ Կրասնոարմեյսկի ռայոնի, նավարկելի ջրանցքի առաջին շլյուզի վրա։

Վերևից երևում է ժողովուրդների առաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հոյակապ մոնումենտը։ Առաջնորդը նայում է դեպի հյուսիս սովետական ժողովրդի անմահ փառքի քաղաքին՝ Ստալինգրադին։

Վոլգա-Դոն ջրանցքի առաջին շլյուզից վաթսուն կիլոմետր հեռու, տրակտորի գործարանի շրջանում, այժմ ծավալվում է աշխարհի ամենախոշոր հիդրոկայաններից մեկի՝ Ստալինգրադի հիդրոկայանի և Վոլգա-Ուրալ ջրանցքի շինարարությունը։

Օդանավը թռչում է Ստալինգրադի վրայով։

Նայում եմ փառապանծ քաղաքին և հիշում քառասուներեք թվականի գարունը, երբ առաջին անգամ եղա Ստալինգրադում։ Այդ տարին էր, որ Ստալինգրադի մոտ ջախջախվեց հիտլերյան երեք հարյուր հազարանոց բանակը։ Ավերակների ու մոխրակույտերի մեջ տարածված էր անհաղթ քաղաքը։ Թվում էր, թե վիթխարի ուժի մի փոթորիկ սուրացել է քաղաքի վրայով և իր ետևից աններևակայելի մի քաոս է թողել։ Քաղաքի կենտրոնում ոչ մի կանգուն շենք չկար, իսկ այգիներում և պուրակներում՝ ոչ մի ծառ չէր մնացել։

Եվ ահա Ստալինգրադն այսօր...

Շողշողում է քաղաքն իր ասֆալտապատ պողոտաներով, հրապարակներով, խանութների շքեղ ցուցափեղկերով։ Այգիների ու զբոսավայրերի բուռն կերպով աճած կանաչի մեջ ընկղմված աղմկում է վերածնված Ստալինգրադը՝ Վոլգայի հրաշալի դյուցազնը։

Ստալինգրադում այժմ գործում են տասնյակ նոր գործարաններ ու ֆաբրիկաներ։ Նրանք հայրենիքին տալիս են հազարավոր տրակտորներ, էքսկավատորներ, հզոր հողամուղ մեքենաներ։ Նավաշինարաններից ամեն օր ջուր են իջնում գետային նոր կատերներն ու բեռնանավերը։

Ստալինգրադում կան բազմաթիվ նորակառույց դպրոցներ, ինստիտուտներ, բանվորական ակումբներ, կինո-թատրոններ, թատրոններ։

Քաղաքի կենտրոնում փռված է զոհված հերոսների հրապարակը, որն ամեն կողմից շրջապատել են բազմահարկ գեղեցիկ շենքերը։ Աչքի է ընկնում դրամատիկ թատրոնի հիանալի շենքը, որը զարդարված է սպիտակ սյունաշարներով ու գեղեցիկ քանդակներով։ Հրապարակը կտրում անցնում է ծառազարդված լայն մի փողոց, որտեղ արդեն բարձրացել են բազմահարկ շատ շենքեր։ Դա ամբողջ քաղաքով մեկ ձգվող «Խաղաղության փողոցն է»։ Փողոցի վրա, նրա լայնքով կախված է մետաղյա մի ցանց։ Ցանցի վրա հսկայական ոսկեզօծ տառերով գրված է՝ «Աշխարհին խաղաղություն»։ Դա ստալինգրադցիների, սովետական բոլոր մարդկանց ցանկությունն է. այն մարդկանց, որոնք կյանքի գնով նվաճեցին այդ խաղաղությունը։ Կեսօրյա քամին թեթևորեն ճոճում է ցանցը,

իսկ ցանցի վերևում օրվա որ ժամին ուզեք, կարելի է աղավնիներ տեսնել։

Առաջին անգամ Ստալինգրադ եկող մարդու աչքին անմիջապես երևում է այդ թռչունների շատությունը։ Իսկ Ստալինգրադ գալիս են մարդիկ Սովետական Միության բոլոր ծայրերից, աշխարհի տարբեր երկրներից։

Առաջին վայրը, ուր հաճախում են էքսկուրսանտներն ու դելեգացիաները, դա ոչ այնքան մեծ, կարմիր աղյուսից կառուցված մի շենք է, որը գտնվում է նոր կայարանի դիմաց. դա Ցարիցինի — Ստալինգրադի պաշտպանության տուն-թանգարանն է։ Թանգարանի ընդարձակ դահլիճներում ցուցադրված են նյութեր, որոնք հաճախորդներին պատմում են, թե ինչպես Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ ստեղծվեց Ցարիցինի պաշտպանությունը քաղաքացիական կռիվների ժամանակ, թե ինչպես Ստալինը աճեցրեց ու դաստիարակեց Կարմիր Բանակի առաջին հրամանատարներին, թե ինչպես ջախջախվեցին սպիտակ գվարդիական ոհմակները և ազատվեց Վոլգան և Ռուսաստանի ամբողջ հարավը։

Մյուս սենյակներում դետեղված իրերն ու փաստաթղթերը մանրամասն պատմում են Ստալինգրադի հերոսական պաշտպանության և ֆաշիստական բանակի ջախջախման մասին։

Որպես սովետական ռազմիկների և ստալինգրադցիների նկատմամբ ունեցած խորը հարգանքի ու շնորհակալության նշան, Եվրոպայի ազատագրված ժողովուրդները բազմաթիվ նվերներ են ուղարկել նրանց։ Նվերները զբաղեցնում են թանգարանի դահլիճներից մեկը։ Այստեղ է Չեխոսլովակիայի բանվորների նվերը՝ հանքափորի լապտերը, անգլիական ժողովրդի նվերը ստալինգրադցիներին՝ ոսկե դաստակով պողպատե սուսերը, և ուրիշ շատ նվերներ Չինաստանի, Վյետնամի, Կորեայի աշխատավորությունից։



Ստալինգրադհիդրոշին. «Ստալինգրադյան—1005» գերհզոր հողամուղը:

Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ-ի

Վ. Ի. Լենինի անվան Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի բացումով Ստալինգրադը դարձավ հինգ ծովերի նավահանգիստ։ Եվ այս տարի մարդկանց առանձնապես մեծ հոսանք սկսվեց դեպի հերոս-քաղաքը։

Ստալինգրադը զարդարվեց նաև առափնյա հրաշագեղ մի փողոցով, որտեղ բարձր սյունաշարեր և գրանիտյա նավամատույցներ կան։ Լայն ու քանդակներով զարդարված մի սանդուղք իջնում է դեպի Վոլգան։ Ստալինգրադի նավահանգստում այժմ կանգ են առնում նավեր, որ գալիս են Օդեսայից ու Բաթումիից ու մեկնում են Մոսկվա և Գորկի, գալիս են Կամայի ափերից ու գնում են Ռոստով ու Ազովի ծով։

Հինգ ծովերի տրասայով երթևեկող էքսկուրսանտները հանդիպում են Ստալինգրադում, որպեսզի դիտեն քաղաքը։ Նրանք մի քանի րոպե լռելյայն կանգնում են արձանների և Ստալինգրադի համար, մեր Հայ-

րենիքի ազատության և անկախության համար մղված մարտերում զոհված հերոսների շիրիմների մոտ։

Սեպտեմբերի երեքին, զոհված մարտիկների հրապարակի կանաչ պուրակում, առանձնապես բազմամարդ էր։ Մարդիկ խմբվել էին մի շիրիմի մոտ, որի վրա մի փոքր գրանիտյա հուշարձան կա։ Վարդագույն քարի վրա դրոշմված ոսկենիշ բառերն ասում են, որ այստեղ իր մարտիկ ընկերների, Ստալինգրադի պաշտպանների հետ, թաղված է գնդացրային վաշտի հրամանատար, Իսպանական ժողովրդի հարազատ զավակ, կոմերիտական Ռուբեն Իբառուրին։ Հերոսի մահվան տասնամյակի առթիվ, նրա շիրիմի մոտ կայացավ միտինգ։ Ստալինգրադցիներին ուղղված հուզիչ ճառով հանդես եկավ Ռուբեն Իբառուրիի քույրը՝ Ամայա Ռուիս Իբառուրին։

Սեպտեմբերի պայծառ, արևոտ օր է։ Լայնահուն Վոլգայից լսվում է նավերի բազմաձայն շչակների երգը։ Ստալինգրադի վրա տարածվել է խաղաղ երկինքը։ Հերոսների գերեզմանի պուրակի փարթամ կանաչի մեջ հանդիսավոր լռությամբ կանգնել են քաղաքի պիոներներն ու դպրոցականները, կոմերիտականները, աշխարհի տարբեր ժողովուրդների ներկայացուցիչները՝ չինացիներ, կորեացիներ, անգլիացիներ, ֆրանսիացիներ, իսպանացիներ։ Նրանք մտածում են խաղաղության լուսատուի՝ սոցիալիզմի երկրի մասին, որի առաջընթացը ղեկավարում է մեծ ուսուցիչ և ամբողջ առաջավոր մարդկության բարեկամ Ստալինը։ Նա ազատության ու երջանկության ճանապարհ է ցույց տալիս մարդկանց։

Կանաչազարդ զբոսավայրի վրա, մարդկանց գլուխների վերևում, բարձր ու կապույտ երկնքում լողում են Ստալինգրադի աղավնիները, խաղաղության հավքերը։



Ստալինգրադ. Վ. Ի. Լենինի անվան Վոլգա–Դոն նավարկելի ջրանցքի բացման օրերին ավարտվեց դեպի Վոլգա–Դոն տանող գրանիտե սանդուղքի կառուցումը։

Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ-ի

# ԲՈՑԱՇՈՒՆՉ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆԵՐԸ

Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

Նկ. Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Մեր պարտիայի հիասքանչ մարտիկ Սուրեն Սպանդարյանը (Տիմոֆեյ) ծնվել է 1882 թվականի դեկտեմբերի տասնհինգին Թիֆլիսում։ Դեռևս մանուկ հասակից Սպանդարյանը ցուցաբերում է արտակարգ ընդունակություններ և բնավորության հաստատուն գծեր։ Սկզբնական կրթությունը նա ստանում է տանը։ Ապա 1894 թվականին ընդունվում է Թիֆլիսի արական գիմնազիայի երկրորդ դասարանը, և գիմնազիան ավարտում է 1902 թվականին փայլուն ցուցանիշներով։



Աշակերտ Սուրենը շատ էր կարդում։ Նա մեծ սիրով ուսումնասիրում էր ռևոլյուցիոն շարժումների պատմությունը։ Պատանի Սուրենի վրա խոր ազդեցություն էին թողել Մարքսի և Էնգելսի երկերը, ռուս ռևոլյուցիոն դեմոկրատներ՝ Բելինսկու, Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի աշխատությունները։ Նա շատ էր սիրում ռուս գրողների երկերը։ Անգիր գիտեր Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի բանաստեղծություններից շատերը։

1902 թվականին Սպանդարյանը մտավ Ստալինի կողմից ղեկավարվող Թիֆլիսի սոցիալ-դեմոկրատական լենինյան-իսկրայական կազմակերպության մեջ։ Նա դարձավ ընկեր Ստալինի մարտական զինակիցներից մեկը և մինչև իր կյանքի վերջը պայքարեց Լենինի—Ստալինի գործի հաղթանակի համար։

1902 թվականի աշնանը Սպանդարյանն ընդունվում է Մոսկվայի համալսարանը։ Այստեղ նա եռանդուն բոլշևիկյան աշխատանք է ծավալում բանվորների և ուսանողների շրջանում։ Նա պատասխանատու աշխատանքի է ուղարկվում Կրասնայա-Պրեսնյա ռայոնը։

1905 թվականի հունիսին Սպանդարյանը վերադառնում է Թիֆլիս և մասնակցում 1905 թվականի Թիֆլիսի բանվորական ցույցերին, որոնք կազմակերպել ու գլխավորում էր ընկեր Ստալինը։

Այդ ժամանակ Սուրենն իր ընկերների միջոցով իմանում է, որ Մոսկվայի պրոլետարիատը, բոլշևիկների ղեկավարությամբ, պատրաստվում է զինված ապստամբության ցարիզմի դեմ։ Սպանդարյանը մեկնում է Մոսկվա և դառնում դեկտեմբերյան զինված ապստամբության ղեկավարներից մեկը։ Դրա համար ցարական կառավարությունը նրան հեռացնում է համալսարանից, պատճառ բռնելով նրա ուսման վարձ չվճարելը։

Ժողովրդի թշնամիները Սպանդարյանի մասին ասում էին. «Եթե քրքրես Տիմոֆեյի խելքը, ապա այնտեղ միայն Լենին կգտնես»։ Դա, իհարկե, պատիվ էր բերում Սուրենին։

Շահումյանի հետ միասին Սպանդարյանը մասնակցեց բոլշևիկյան «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» և այլ թերթերի հրատարակմանը։

1907 թվականին Տիմոֆեյը ընտրվում է պարտիայի Բաքվի կոմիտեի անդամ և ղեկավարում է նավթարդյունաբերական խոշոր ռայոններից մեկի՝ Սև քաղաքի պարտիական աշխատանքները։ Այդ ժամանակ ընկեր Ստալինի և նրա զինակիցների ղեկավարու-

*թյամբ Բաքվի պրոլետարիատը կանգնած էր համառուսաստանյան բանվորական շարժման առաջին շարքերում։ Տիմոֆեյի աշխատանքի շնորհիվ Սև քաղաքից և Զավակզալնայա ռայոններից դուրս քշվեցին ժողովրդի թշնամիները, ջախջախվեցին նրանց մնացորդները։*

*Սպանդարյանը ակտիվ դեր է կատարում նաև Բաքվի գաղտնի տպարանի վերականգնման և բոլշևիկյան մամուլի հրատարակման գործում։*

*Ժանդարմական մատյաններում արդեն*



Սուրեն Սպանդարյանը աքսորավայրում։

*գրանցված էր «Բաքվի կազմակերպության աչքի ընկնող գործիչ, Սև քաղաք ռայոնի ներկայացուցիչ» Սպանդարյանի ազգանունը։*

*Տիմոֆեյն առաջին անգամ ձերբակալվեց Բաքվում 1907 թվականի մայիսին։ Այդ ժամանակ նա հայտնեց, որ ինքը Լուարսաբ Իվանովիչ Յաշվիլին է, մի ազգանուն, որը չէր գրանցված ժանդարմական մատյաններում։ Ստիպված եղան նրան բանտից ազատել և շարունակել Սպանդարյանի որոնումը։*

*1909 թվականին Տիմոֆեյը նորից է ձերբակալվում։ 1910 թվականին Սպանդարյանը տեղափոխվեց Թիֆլիս և ընկեր Ստալինի ցուցումներով սկսեց ղեկավարել այնտեղի բոլշևիկյան ընդհատակյա կազմակերպության աշխատանքները. նա ուժեղ պայքար ծավալեց մենշևիկների դեմ։*

*1911 թվականի հունիսին Փարիզում Վ. Ի. Լենինի գլխավորությամբ կայացավ ՌՍԴԲՊ Կենտկոմի անդամների խորհրդակցությունը, որտեղ որոշվեց հրավիրել պարտիայի Պրագայի վեցերորդ կոնֆերանս։ Ս. Սպանդարյանը կոնֆերանս հրավիրող հանձնաժողովի կազմում էր։*

*Բաքվի բոլշևիկյան կազմակերպության կողմից Ս. Սպանդարյանը ընտրվեց պարտիայի վեցերորդ կոնֆերանսի դելեգատ։ Կոնֆերանսի հրավիրման Ռուսաստանի կազմկոմիտեն հանձնարարեց Ս. Սպանդարյանին մեկնել Մոսկվա, Պետերբուրգ և Մերձբալթյան երկրները՝ նախապատրաստելու կոնֆերանսի հրավիրումը։ Նա փայլուն կերպով կատարեց Լենինի և պարտիայի առաջադրանքը։ Պրագայի կոնֆերանսը սկիզբ դրեց նոր տիպի պարտիային, լենինիզմի պարտիային, բոլշևիկյան պարտիային։*

*Կոնֆերանսում Բաքվի, Թիֆլիսի, Սուխումի, Քութայիսի, Բաթումի, Փոթիի և Գորիի պարտիական աշխատանքների մասին զեկուցեց Սուրեն Սպանդարյանը։ Պրագայի կոնֆերանսում ընտրված Կենտրոնական Կոմիտեի անդամ էր նաև Սպանդարյանը։ Նա ընտրվեց նաև Կենտկոմի Ռուսական բյուրոյի անդամ։*

*Կենտկոմի հանձնարարությամբ արտա-*

*սահմանից վերադառնալուց հետո, Ռիգայում, Պետերբուրգում, Մոսկվայում Սպանդարյանը զեկուցումներ է տալիս Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին։ Հետո նա վերադառնում է Անդրկովկաս և շարունակում իր աշխատանքը։*

*1912 թվականին Ս. Սպանդարյանը ձերբակալվում է։*

*1913 թվականի մայիսին Թիֆլիսում դատական դռնփակ նիստում լսվեց Սպանդարյանի և մյուս բոլշևիկների գործը։ Ցարական դատարանը բոցաշունչ ռևոլյուցիոներին դատապարտեց ցմահ աքսորի՝ հեռավոր Սիբիր։ Սպանդարյանին շղթայակապ ուղարկեցին Սիբիր, Ենիսեյսկի նահանգը։ Թիֆլիսից Ենիսեյսկ հասնելը տևեց երկու ամիս։*

*Սպանդարյանը ռևոլյուցիոն աշխատանք էր կատարում նաև Ենիսեյսկում։ Աքսորական բոլշևիկները փորձում են կազմակերպել Ստալինի, Սպանդարյանի և Սվերդլովի փախուստը։ Դրա համար Տիմոֆեյը կրկին ձերբակալվում է և աքսորվում ավելի հեռու՝ Տուրուխանի երկրամասի Մոնաստիրսկոյե գյուղը։ Այստեղ Սպանդարյանը կապ է հաստատում և հանդիպումներ է ունենում ընկեր Ստալինի և Սվերդլովի հետ, որոնք աքսորված էին Տուրուխանի նահանգի Կուրեյկա «կայանը»։ Նրանք միասին նամակ են գրում Լենինին։ 1916 թվականին ընկեր Ստալինի մի նամակի միջոցով Սպանդարյանը հաղորդում է Լենինին. «Բարև Ձեզ, թանկագին Վլադիմիր Իլյիչ։ Այս րոպեիս Իոսիֆն ինձ մոտ հյուր է և ցանկություն ծագեց ուղարկել Ձեզ մեր ողջույնը։ Ինչպե՞ս եք։ Ի՞նչ եք անում։ Ինչպե՞ս է Ձեր տրամադրությունը։ Գրեցեք ինչ որ կարող եք։ Ծարավի ենք կենդանի խոսքի։ Կսպասենք Ձեր նամակին։ Սուրեն»։*

*Երկարատև հետապնդումները, բանտերը, աքսորավայրերը, նյութական ծանր զրկանքները հյուծեցին առանց այն էլ հիվանդ Սուրենի առողջությունը։ 1916 թվականի գարնանը Տիմոֆեյը ծանր հիվանդացավ։ Ընկերների միջնորդությամբ նրան տեղափոխում են սկզբում Ենիսեյսկ, իսկ այնտեղից էլ Կրասնոյարսկ քաղաքի հիվանդանոցը, որտեղ և 1916 թվի սեպտեմբերի 24-ին Սուրեն Սպանդարյանը մահանում է։*

## ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ ԳՐԱԾ ՆԱՄԱԿԻՑ

*Փետրվարի 4, (1916 թ. Մոնաստիրսկոյե գյուղ,*
*Տուրուխանյան երկիր)*

Իմ թանկագիններս: Ստացա ձեր նամակը և գոնե մի քիչ ուրախացա իմ այս տաղտկալի կյանքում: Մի բան միայն ինձ համար անախորժ էր, դա Մարուսկայի դպրոցական գործերն են: Նա ոչ միայն սկսել է ավելի վատ սովորել, այլ նույնիսկ նրա նամակներն էլ հիմա առաջվա նամակների նման չեն. գրում է կեղտոտ, թանաք կաթեցնելով գրածի վրա, սխալներով: Ի՞նչ է պատահել, աղջիկս: Դու նույնիսկ այնպիսի առարկաներից, ինչպիսիք են պատմությունն ու աշխարհագրությունը, հազիվ կարողանում ես 3 ստանալ: Ապա ի՞նչն է քեզ հետաքրքրում, ի՞նչ ես անում ամբողջ օրերով: Դու մի անգամ գրել էիր ինձ, որ քեզ շատ է հետաքրքրում պատմությունը: Բանից դուրս է գալիս, որ քո այդ հետաքրքրությունը 3-ից դենը չի գնում: Քո այդ անշեղորեն ընկնող հաջողությունները ինձ շատ են անհանգստացնում և մտահոգություն պատճառում: Ահա — նստած եմ լինում կամ պառկած, կարծես թե ոչ մի բանի մասին չեմ մտածում, մեկ էլ տեսար՝ սիրտս ցավեց: Ի՞նչ պատահեց: Պատճառն ի՞նչ է: Որ մի քիչ սկսում եմ խորանալ,— բանից դուրս է գալիս, որ ամբողջ ցավը քո նամակի և քո թվանշանների մեջ է: Իհարկե, ես այն կարծիքը չունեմ, թե թվանշաններն իսկապես ճիշտ կերպով են որոշում և չափում աշակերտների գիտելիքների պաշարը, բայց և այնպես, զեթ հարաբերական չափով, նրանք ինչ-որ գաղափար տալիս են աշակերտի գիտեցածի մա-

սին: Իսկ քո նամակն ըստ ամենայնի հաստատում է նույնիսկ 2-ը ռուսաց լեզվից:

«Կարմիր ծովահեններ» կարդալով շատ էլ առաջ չես գնա, սիրելիս: Թո՛ղ ապա այդ բաներն ու զբաղվիր որևէ ավելի օգտակար գործով:

Քո հասակում ես կարդում էի շատ ավելի լուրջ գրքեր, մինչդեռ ինձ վրա այնպիսի ազդեցություն գործադրող չկար, ինչպիսին քեզ վրա է տարածում քո սիրելի և թանկագին մայրիկը: Իմ մտավոր զարգացմամբ գրքերի ոչ ոք չէր հետաքրքրվում, և ես դեռ մինչև այսօր էլ տառապում եմ դրանից: Եվ այնուամենայնիվ, ես բնազդաբար ձգտում էի դեպի լուրջ գրքերը, և ոչ թե դեպի ինչ-որ «ծովային և այլ տեսակի ավազակները»: Ուզում եմ հուսալ, որ այսուհետև իմ անուշիկ Մերին վճռական շրջադարձ կկատարի դեպի հաջողություններ ձեռք բերելն իր պարապմունքներում:

Ձեզ սիրող և ձեր կարոտը քաշող
պապա ՍՈՒՐԵՆ.

---

# ԻՄ ՊԱՊԻԿԸ

*ՄԱՐԻՅԱ ՎՇՏՈՒՆԻ* *Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



Սիրում եմ ես իմ պապիկին,
Նա միշտ քարեր է տաշում,
Մուրճն ու բրիչ միշտ իր ձեռքին՝
Սիրուն նախշեր է քաշում:

Նա շինել է յոթ նոր աղբյուր,
Եվ գեղեցիկ յոթ ծորակ,
Գիշեր-ցերեկ ջուր է հոսում,
Զուլալ, անուշ, սառնորակ:

Մեկը՝ գյուղի անծայր դաշտում,
Ուր ծաղիկներ կան առատ,
Մեկն էլ գյուղի կանաչ այգում,
Ուր խաղում ենք մենք ազատ:

Լավ վարպետի համբավ ունի,
Չե՞ք ճանաչում դուք նրան,
Դեպուտատ է գյուղսովետի,
Կրծքին ունի շքեղ նշան:

Շատ եմ սիրում իմ պապիկին,
Նա լավ նախշեր է գծում,
Ու շարելով քարը-քարին՝
Աղբյուրներ է կառուցում:

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

Տասնվեց տարի առաջ, 1936 թվականի դեկտեմբերի 5-ին Սովետների արտակարգ ութերորդ համագումարում ժողովրդի ընտրյալները հաստատեցին Սովետական Միության նոր Կոնստիտուցիան: Կոնստիտուցիայի ստեղծողը ընկեր Ստալինն էր: Դրա համար էլ սովետական ժողովուրդն այն կոչեց Ստալինյան Կոնստիտուցիա: Նոր Կոնստիտուցիան մեր նոր կյանքի, հաղթանակած սոցիալիզմի երկրի հիմնական օրենքն է:

Մեր երկրում չկան հարուստներ և աղքատներ: Նա, ով ստեղծում է մեր Հայրենիքի հարստությունը, նավթ և քարածուխ է հանում երկրի ընդերքից, գործարանային ֆուրայի մոտ երկաթն է կոփում, կոլտնտեսային անծայր դաշտերում ցորեն ցանում, կամ կառուցում է գեղեցիկ քաղաքներ, տներ, գործարաններ, ջրանցքներ, նա է հենց սովետական երկրի իսկական տերը:

Արդեն ավարտվեց կոմունիզմի առաջին մեծ կառուցումը՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը: Միջին Ասիայում և Ղրիմում, Վոլգայի, Դոնի, Դնեպրի վրա կոմունիզմի մեծ կառուցումները ամբողջ առաջավոր մարդկության հիացմունքն են առաջացնում: Դեռ երբեք մեր Հայրենիքը չի եղել այնպես գեղեցիկ և հզոր, ինչպես այսօր: Բայց նրա վաղվա օրը ավելի գեղեցիկ ու շքեղ կլինի:

Վերջին տարիների մեր կառուցումների մեծ թափը և ծավալը ավելի նշանակալից են դառնում: Իսկ այդպիսի «հրաշքների հրաշք» կատարելու համար որտեղի՞ց այդքան ուժ:

Մեր ժողովուրդը այդ հարցին հպարտությամբ պատասխանում է. «Դրա բացատրությունը պետք է փնտրել Ստալինյան Կոնստիտուցիայում»:

Մեր Կոնստիտուցիան ամենադեմոկրատականն է աշխարհում: Նրանով ապահովվում է հասարակական սեփականությունը արտադրության միջոցների, բնական հարստությունների և այն ամենի վրա, որ ստեղծվում է ժողովրդի ձեռքով, աշխատավորների իսկական ազատությունը, բոլոր ազգերի և ռասաների լիակատար հավասարությունը, կնոջ հավասարությունը տղամարդու հետ:

Մեզանում ամեն մեկի առաջ լայնորեն բացված են կյանքի բոլոր դռները: Նա մանկական հասակից մեծ հոգատարությամբ և գուրգուրանքով է շրջապատված: Նրա երջանկությունը պահպանում է Ստալինյան ոսկեգիր Օրենքը:

Սովետական Միությունը հանդիսանում է համատարած գրագիտության առաջին երկիրն աշխարհում, ուր մոտ 57 միլիոն մարդ է սովորում:

Նա, ով ուզում է սովորել — թող սովորի: Հազարավոր ուսումնական հաստատություններ՝ տարրական դպրոցներից սկսած մինչև համալսարանները, բացված են նրա համար:

Դա մեզ մոտ կոչվում է կրթության իրավունք:

Սովետական երիտասարդությունը ունի այնպիսի իրավունքներ և ազատություններ, որպիսին չի ունեցել և չունի ոչ մի կապիտալիստական երկրի երիտասարդություն: Զուր չէ, որ սովետական պատանիներին և աղջիկներին կոչում են աշխարհի ամենաերջանիկ երիտասարդներ:

Սովետական մարդիկ ունեն ընտրելու և ընտրվելու, աշխատանքի, հանգստի և այլ իրավունքներ, խոսքի, մամուլի, ժողովների ազատություն:

Այդպիսի իրավունքներ և ազատություններ չկան կապիտալիստական երկրներում: Այնտեղ թագավորում է բռնությունը և ստրկությունը: Այդպիսի կարգ ստեղծել են կապիտալիստները աշխատավորությանը շահագործելու համար: Կապիտալիստական ավազակային օրենքները հաշվի չեն առնում այն, որ աշխատավորների կյանքը օրեց-օր վատանում է: Դրանք այժմ ծառայում են գիշատիչ դոլարի շահերին: Կապիտալիստները ձգտում են աշխատավորների արյան գնով ինչքան կարելի է ոսկի ձեռք բերել: Այդ օրենքն է թույլատրում Ամերիկայում ֆաշիստ մարդասպաններին, որը ցերեկով, առանց դատի ու դատաստանի կախել ազնիվ նեգրին, միայն այն բանի համար, որ նա նեգր

է, նրա մորթը սև է... Դրանով էլ կապիտալիստներն այժմ նախապատրաստում են նոր համաշխարհային պատերազմ, բայց ժողովուրդները չեն թողնի նրանց իրենց սև գործը կատարելու։

Ստալինյան Կոնստիտուցիայի արևը պայծառ լուսավորում է աշխարհը։ Նրա շողերի տակ իրենց նոր կյանքն են կառուցում նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։ Ստալինյան Կոնստիտուցիան ոգեվորում է աշխարհի ազատասեր ժողովուրդներին լուսավոր ապագայի համար մղվող նրանց մեծ պայքարում։

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

*Ա. ՕՀԱՆՅԱՆ*
(Աշխարհագրական գիտ. թեկնածու)

*Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ*

*Մեր սովետական հայրենիքում ամեն աշխատանք կատարվում է պլանով։ Ճարտարապետը տուն շինելուց առաջ կազմում է պլան։ Պիոներական ջոկատը ճանապարհորդության դուրս գալու համար նույնպես կազմում է պլան։ Պլան կազմել, նշանակում է՝ գործը սկսելուց առաջ մտածել, հաշվել ու որոշել՝ թե ե՞րբ, որտե՞ղ, ի՞նչ նպատակով, ի՞նչ ես անելու կամ ի՞նչ ես կառուցելու։*



*Սովետական Միության մեջ ամեն մի գործարան, ամեն մի կոլտնտեսություն, դպրոց կամ հիմնարկություն ունի իր աշխատանքի պլանը։ Ամբողջ Սովետական երկիրն էլ ունի իր պլանը՝ դա կոմունիզմի կառուցման պլանն է։ Վերջինս կազմվում է 5 տարին մեկ անգամ՝ պարտիայի ու կառավարության ցուցումների հիման վրա։ Հնգամյա պլանը կազմելու գործը ղեկավարում է Պետական Պլանային Կոմիտեն—Պետպլանը։*

*Մենք արդեն հաջողությամբ կատարել ու գերակատարել ենք չորս հնգամյա պլան՝ կառուցելով բազմաթիվ գործարաններ, երկաթուղիներ, ջրանցքներ, նոր քաղաքներ ու գյուղեր։*

*Իսկ վերջերս, հոկտեմբեր ամսին, Պարտիայի 19-րդ համագումարը հաստատեց Սովետական Միության տնտեսության զարգացման հինգերորդ հնգամյա պլանի դիրեկտիվները։ Եվ հիմա սովետական ամբողջ ժողովուրդը մեծ ոգևորությամբ ու եռանդով լցված կատարում է հինգերորդ 5-ամյա պլանը։*

*Նոր հնգամյա պլանը ծրագրել է մեր սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի բարձր զարգացում։ Կատարելով հնգամյա պլանը, մեր հայրենիքը 1955 թվին կարտադրի մեկ ու կես անգամ ավելի քարածուխ ու պողպատ, քան 1950 թվին։ Չուգունի արտադրանքը կավելանա 76%-ով, իսկ նավթինը՝ 85%-ով։*

*Այսքան մետաղը, քարածուխն ու նավթը մեզ հարկավոր է առաջին հերթին մեքենաներ շինելու և նրանց շարժման մեջ դնելու համար։*

*Մենք խաղաղության կողմնակիցներ ենք և արտադրում ենք գլխավորապես խաղաղ աշխատանքի մեքենաներ՝ հաստոցներ, շոգեքարշեր, ավտոմեքենաներ, ինքնաթիռներ, տրակտորներ, կոմբայններ, տուրբիններ, գեներատորներ, քայլող էքսկավատորներ և այլն։ Այս մեքենաներից յուրաքանչյուրը կատարում է հազարավոր մարդկանց աշխատանք, հեշտացնում է մարդու գործը։ Երևի կարդացել եք քայլող էքսկավատորների*

մասին։ Այս վիթխարի մեքենան ամեն օր կատարում է 10.000 մարդու աշխատանք, իսկ նրան բանեցնում են միայն 5 մեքենավար։

Ահա թե ինչու նոր հնգամյակում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքն ավելանում է 2 անգամ։

Հինգերորդ Ստալինյան հնգամյակում մեծ տարածում են ստանում ավտոմատ-գործարանները։ Սրանք այնպիսի գործարաններ են, որտեղ ամբողջ աշխատանքը կատարվում է առանց բանվորի, առանց մարդու



ձեռք դիպչելու։ Մեքենաները ընդունում են հումքը, արտադրում շինվածքը, փաթեթում այդպիսին, առանձնացնում խոտանը և թողարկում արտադրանքը։ Այդպիսի գործարաններ չկան ուրիշ ոչ մի երկրում։

Իսկ ո՞վ է այստեղ փոխարինում մարդուն։ Այդ անում է էլեկտրական էներգիան։ Ի՞նչ ասես, որ չի անում էլեկտրական էներգիան։ Նա փոխադրում է մարդկանց ու բեռներ, էլեկտրատրակտորի միջոցով վարում է հողը, նա կալսում է կալը, խուզում ոչխարների բուրդը, կթում կովերին, ձուլում պողպատ ու ալումին, լուսավորում շենքերն ու փողոցները...

Նոր հնգամյակում մեր էլեկտրակայանների կարողությունն ավելանում է 2—3 անգամ։ Կոմունիզմի մեծ կառուցումներից մեկը՝ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը կսկսի աշխատել։ Նրա ուժը հավասար է 4 միլիոն ձիու ուժի։ Այդ հսկա էլեկտրակայանի էներգիան լարերով կհոսի և կհասնի Մոսկվա, անցնելով 800 կիլոմետր տարածություն։ Կապիտալիստական աշխարհում էլեկտրաէներգիան ամենաշատը փոխադրվում է 430 կիլոմետր։

Հինգերորդ հնգամյակում շարունակվում է Ստալինգրադի վիթխարի հիդրոէլեկտրակայանի կառուցումը։ Սա ավարտվելու է 1956 թվականին։ Խոշոր հիդրոէլեկտրակայաններ են կառուցվում նաև Անդրկովկասում, Ուկրաինայում, Մերձբալթյան ռեսպուբլիկաներում, Միջին Ասիական ռեսպուբլիկաներում, Սիբիրում՝ Անգարա գետի վրա և այլ վայրերում։

Նորակառույց հիդրոէլեկտրակայաններն ունենալու են ավտոմատ սարքավորում — աշխատելու են առանց բանվորի։ Էլեկտրակայանների, ինչպես և էլեկտրիֆիկացված երկաթուղիների աշխատանքում մեծ տեղ է բռնելու տելեմեխանիզացիան, այսինքն մեխանիզմների կառավարումը հեռվից՝ էլեկտրական ազդանշանների (գույնզգույն լույսերի) միջոցով։

Հինգերորդ հնգամյակում առանձնապես մեծ չափերով ավելանում է հագուստեղենի և սննդամթերքների արտադրությունը։ Կառուցվում են՝ տեքստիլ, կաշվի, կոշկեղենի, շաքարի, ձեթի, կոնսերվի, մսեղենի, յուղի, պանրի, ձկնեղենի բազմաթիվ գործարաններ։ Դրանց տված արտադրանքի շնորհիվ 1955 թվին բնակչությանը կվաճառվի 2—3 անգամ ավելի ապրանքներ, քան 1950 թվականին։

Մեր սիրելի հայր ու հանճարեղ ուսուցիչ Ստալինը սովորեցնում է, որ պետք է առավելագույն չափով բավարարել ժողովրդի նյութական ու կուլտուրական պահանջները, սոցիալիստական արտադրությունն անընդհատ ավելացնելու միջոցով։ Հինգերորդ հնգամյակում անշեղ կերպով իրագործվելու են ընկեր Ստալինի ցուցումները ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացման մասին։

Դրա համար 5-րդ հնգամյակը բարձր զարգացման է հասցնում նաև մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը։

Հնգամյակը մեր կոլտնտեսականների առաջ խնդիր է դնում 1955 թվականին արտադրել մեկ ու կես անգամ ավելի հացահատիկ, բամբակ, շաքարի ճակնդեղ, կարտոֆիլ, խաղող, քան 1950 թվականին։ Մեծ

*չափով ավելանում է նաև մյուս գյուղատըն-տեսական մթերքների արտադրությունը։*

*Հնգամյակը առաջադրանք է տալիս՝ կոլտնտեսություններում 2- 3 անգամ ավելացնել անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Իսկ դրա համար պետք է ավելի լավ խնամել ու կերակրել անասուններին։*

*Գյուղատնտեսության բերքատվությունը բարձրացնելու համար կոմունիզմի մեծ կառուցումների՝ Կույբիշևի, Ստալինգրադի, Թուրքմենական Գլխավոր ջրանցքի ջրամբարներից անցկացվում են ջրանցքներ, որոնք տասնյակ միլիոնավոր հեկտար հող են ոռոգելու։ Անդրկովկասում ջրանցքներ են կառուցվում Քուռ-Արաքսի հարթության ծարավ հողերը ոռոգելու համար։*



*Մետաղի, մեքենաների, ածխի, նավթի, կործվածքների, սննդամթերքների արտադրանքի այսպիսի մեծ աճը պահանջում է մեծ քանակությամբ նոր փոխադրական միջոցներ։ Եվ նոր հնգամյակում տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունն աճում է $1\frac{1}{2}$—2 անգամ։ Կառուցվում են տասնյակ հազարավոր կիլոմետր նոր երկաթուղիներ, ավելանում է նավերի, ավտոմեքենաների և ինքնաթիռների քանակը։*

*Հինգերորդ հնգամյակում սոցիալիստական տնտեսության բուռն զարգացման հետ միասին բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։*

*Ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում և խոշոր արդյունաբերական կենտրոններում մինչև 1955 թվականի վերջը իրագործվելու է ընդհանուր միջնակարգ կրթությունը, որպեսզի հաջորդ հնգամյակում իրագործվի ընդհանուր տասնամյա կրթությունը նաև մնացած քաղաքներում ու գյուղերում։*

*4-րդ հնգամյակի համեմատությամբ դըպրոցների քանակն ավելանում է 70%-ով։*

*Իսկ ինչքա՜ն հոյակապ նոր թատրոններ, կինոներ, գրադարաններ բացելու են իրենց լայն ու լուսավոր սրահները մեր ժողովրդի առաջ։ Ինչքա՜ն նոր հետաքրքիր գրքեր, դասագրքեր, ամսագրեր են լույս տեսնելու։*

*Եվ մենք, բոլոր սովետական քաղաքացիներս, մեծ ու փոքր, բանվոր ու կոլտնտեսական, պիոներ ու դպրոցական, եռանդագին աշխատելով կկատարենք 5-րդ հնգամյակի առաջադրանքները, մի խոշոր քայլ ևս անելով սոցիալիզմից դեպի կոմունիզմ տանող ճանապարհի վրա։ Սովետական ժողովուրդը կկատարի և կգերակատարի 5-րդ հնգամյա պլանը՝ Կոմունիստական Պարտիայի հմուտ ղեկավարությամբ, մեր հանճարեղ ուսուցիչ ընկեր Ստալինի առաջնորդությամբ։*

# ԻՍԿԱԿԱՆ ԸՆԿԵՐԸ

Գ. ԳԱԶԱԶՅԱՆ

Նկ. Ա. ԲԵՔԱՐՅԱՆԻ

## 1

Աշոտը գրասեղանի առաջ նստած գիր էր անում։ Նա մի քանի անգամ գրեց, ջնջեց, հետո գրածը խզբզեց և սրտնեղած՝ գրիչը դեն շպրտելով, գլուխը ձեռքերի մեջ առավ ու լուրջ մտածմունքի մեջ ընկավ։

Հայրիկը բազկաթոռին նստած թերթ էր կարդում և աչքի տակով հետևում էր Աշոտի ամեն մի շարժումին։ Երբ նա տեսավ, որ Աշոտը ինչ-որ շատ է մտազբաղ, ակնոցների տակից նայելով նրան, հարցրեց.

— Ի՞նչ է պատահել, Աշո՛տ, դժվարանո՞ւմ ես...

— Ոչ, հայրի՛կ, ես դասս պատրաստել եմ, հիմա ուրիշ բան եմ գրում։

— Ի՞նչ ես գրում,— հետաքրքրվեց հայրիկը։

Պարզվեց, որ ջոկատի պատի թերթում ջոկատավար Զորիկը հոդված էր գրել Աշոտի մասին։

Նախորդ օրը, հանրահաշվի դասին, երբ Գուրգենը դժվարանում էր լուծել հանրահաշվական վարժությունները, Աշոտը լուծել էր վարժությունները և տվել Գուրգենին։ Ուսուցչուհին նկատել էր Աշոտի արարքը և աշակերտների առաջ պախարակել նրան։

— Զորիկը խայտառակել է ինձ պատի թերթում... ես նրան ցո՛ւյց կտամ... ես էլ նրան եմ խայտառակելու...,— հուզված վերջացրեց Աշոտն իր պատմությունը։

— Ի՞նչպես թե խայտառակելու ես,— զարմացած հարցրեց հայրը։

— Ես էլ նրա մասին եմ գրելու,— բռնկվեց Աշոտը, ցույց տալով կիսատ հոդվածը։

Հայրը վերցրեց Աշոտի գրածը և կարդաց։

Աշոտը ճգնում էր ապացուցել, որ ինքը չի արտագրել, որ ինքը առհասարակ չի հուշում։ Զորիկը ճիշտ չի գրել իր մասին։ Աշոտի սպասածին հակառակ, հայրիկը դժգոհ դեմքով կիսատ հոդվածը դրեց գրասեղանին և մռայլ օրորեց գլուխը։

Սենյակում լռություն տիրեց։ Աշոտը տեսնելով հոր մռայլ դեմքը, ավելի տխրեց։ Հայրիկը մի պահ սենյակում շրջելուց հետո ձեռքը դրեց Աշոտի ուսին ու ասաց.

— Դու սխալվում ես, Աշո՛տ, սխալվում ես։



— Ինչո՞ւ, հայրի՛կ։

— Որովհետև դու խախտել ես դպրոցական կարգ ու կանոնը և քո արարքով ոչ մի օգուտ չես տվել Գուրգենին, նրա գիտելիքների վրա ոչ մի բան չես ավելացրել։

— Եթե ես չհուշեի, նա վատ գնահատական կստանար,— արդարացավ Աշոտը.— լա՞վ կլիներ։

— Դա շատ վատ կլիներ. բայց ելքը հուշելու մեջ չէ։ Գուրգենը լավ գնահատականներ ստանալու համար պետք է համառ կերպով աշխատի, իսկ դու պետք է օգնես նրան։

— Ախր նա չի կարողանում սովորել, կարդացածը չի հասկանում, խնդիրները դժվար է ըմբռնում։

— Ա՛յ, հենց այստեղ է անհրաժեշտ քո օգնությունը, որ նա կարդացածը հասկանա և խնդիրներն էլ ըմբռնի։ Այս հոդվածը պետք է պատռել և նոր հոդված գրել. գրել, թե ինչպես պետք է օգնել ընկերոջը... այս հոդվածը քո երկրորդ սխալն է։

— Ինչո՞ւ, հայրի՛կ։

— Սխալ ես գործել և չես էլ ուզում ըն-

ղունել արդարացի քննադատությունը։ Իսկ ով չի ընդունում իր սխալը, ով չի ընդունում ընկերոջ արդարացի քննադատությունը, նա կյանքում երբեք չի կարող առաջ գնալ։

Հեռախոսը զանգեց։ Հայրիկին շտապ կանչում էին գործարան։ Եվ նա գնաց։

2

Պատմության դասին ուսուցիչը, հակառակի պես, ամենից առաջ Գուրգենին դաս հարցրեց։

— Ապա, Գուրգե՛ն, պատմիր դասդ։

Գուրգենը շվարած ու գլուխը կախ լուռ կանգնել էր։ Նա աղերսական հայացքով նայեց Աշոտին։ Պարզ էր՝ խնդրում էր հուշել, սակայն Աշոտը ձևացրեց, թե չի նկատում ընկերոջ հայացքը և գլուխը թեքեց դեպի լուսամուտը։

— Դասը չես սովորել, Գուրգեն, ես քեզ երկուս եմ նշանակում, նստիր։

Դասամիջոցին, երբ բոլորը այս ու այն կողմ ցրվեցին, Գուրգենը մոտեցավ Աշոտին ու ասաց.

— Լավ ընկեր չես դու… ես այդպես չէի վարվի։

— Ե՞ս…

— Այո՛, դու։

— Սխալվում ես, Գուրգե՛ն, հավատա՝ սխալվում ես.— ասաց Աշոտը և դեռ ուզում էր շատ բան ասել, սակայն Գուրգենն առանց ականջ դնելու նրան, հեռացավ դեպի բակը։

Այդ օրվանից երկու ընկերները խռովեցին։ Էլ նրանք դասարանում կողք-կողքի չէին նստում, դասամիջոցներին միմյանց հետ չէին խոսում, միասին դպրոց չէին գնումգալիս։ Բայց մեկը միշտ հետևում էր մյուսի ամեն մի քայլին, դասի ընթացքում ուսուցչի հարցերին տված ամեն մի պատասխանին։

3

Մի օր էլ Գուրգենը դպրոց չեկավ։ Այդ բանը խիստ անհանգստացրեց Աշոտին։ Ամբողջ օրը նա մի տեսակ ցրված էր և մտքով անընդհատ Գուրգենի հետ էր. արդյոք ի՞նչ է պատահել, հիվա՞նդ է, թե…

Այս միտքը շատ տխրեցրեց Աշոտին և նա որոշեց դասերից հետո գնալ Գուրգենենց տուն։ Նրան միացավ նաև ջոկատավար Զորիկը։

Երբ Աշոտն ու Զորիկը գնացին Գուրգենենց տուն, Գուրգենը գրասեղանի առաջ նստած դաս էր սովորում։ Զորիկն ու Աշոտը տեսնելով այդ, ուրախացան, իսկ Գուրգենն անակնկալի եկած, վազեց ընկերներին դիմավորելու։

— Ինչո՞ւ այսօր դպրոց չէիր եկել,— անհամբեր հարցրեց Աշոտը։

— Հիվա՞նդ էիր,— ավելացրեց Զորիկը։

Գուրգենը շփոթվեց և կցկտուր պատասխանեց.

— Այո… մի քիչ հիվանդ էի. գլուխս



ցավում էր… բայց խնդրում եմ մայրիկիս չասեք, որ դպրոց չեմ եկել…

— Ինչո՞ւ, գրեթե միաբերան հարցրին Աշոտն ու Զորիկը։

— Որովհետև… որովհետև մայրիկը չըգիտե, որ ես դպրոց չեմ եկել։ Ես նրան չեմ ասել…

Եվ Գուրգենը, գրեթե արտասվելով, պատմեց, որ ինքը դպրոց չի գնացել, որովհետև չի կարողացել լուծել հանրահաշվական վարժությունները։

— Ճիշտ չես վարվել,— ասաց Զորիկը մի պահ լռելուց հետո։ Եթե չէիր կարողանում լուծել վարժությունները, պետք է դիմեիր ընկերներիդ օգնությանը։

— Իհարկե, պետք է այդպես վարվեիր,— վրա բերեց Աշոտը,— եթե ինձ ասեիր, միասին կնստեինք և կլուծեինք վարժությունները, ես քեզ կօգնեի։

— Ես կարծում էի, որ դու այլևս ինձ չես

օգնի։ Չե՞ս հիշում պատմության դասը։ Քեզ վստահեցի և երկու ստացա...

— Այդ արդեն ուրիշ բան է,— միջամտեց Զորիկը,— հուշելը օգնել չէ։ Իսկ տանը, այ այստեղ, վարժությունները լուծելու գործում ընկերոջն օգնելը իսկական ընկերասիրություն է, իսկական պիոների գործ։

Ընկերները երկար չվիճեցին և գործի անցան։ Նրանք նստեցին Գուրգենի կողքին և սկսեցին բացատրել նրան վարժությունները։ Գուրգենը, ճիշտ է, մի քիչ դժվար էր ըմբռնում, բայց երբ ընկերները օգնում էին նրան, հեշտությամբ գլխի էր ընկնում և ինքնուրույն կերպով կարողանում էր լուծել վարժությունները։ Գուրգենը լուծեց բոլոր վարժությունները։

Հաջորդ օրը Աշոտն ու Գուրգենը, դարձյալ միասին, ուրախ-ուրախ գնացին դպրոց։ Եվ այսպես շարունակվեց մի քանի օր։ Հանրահաշվի դասին Գուրգենը լավ գնահատական ստացավ։

4

Դրանից մի քանի օր հետո պիոներական վեցերորդ ջոկատի հավաքույթում քննարկում էին Աշոտի հոդվածը։ Դա լույս էր տեսել ջոկատի պատի թերթում և ուներ «Ի՞նչպես օգնել ընկերոջը» վերնագիրը։

Աղմկոտ նիստ էր։ Առաջինը խոսելու համար վեր կացավ Աշոտը։ Նա պատմեց հայրիկի և իր խոսակցությունը Գուրգենին օգնելու հարցի շուրջը։ Հետո նա առաջարկեց ամրապնդել կարգապահությունը դպրոցում, վերջ տալ հուշելուն, օգնել ընկերոջը, լինել առաջավոր և բարձր պահել դասարանի ու դպրոցի պատիվը։

— Իսկ եթե Գուրգենն ու Նորիկը շարունակեն հին ձևով և հուշելու վրա հույս դնեն, այն ժամանակ ի՞նչ անենք,— մեջ ընկավ Սերոբը և հենց ուզում էր առաջարկել, որ Գուրգենն ու Նորիկը իրենք խոսեն իրենց մասին, երբ նստած տեղից վեր թռավ Գուրգենը։

— Ընկերնե՛ր,— ասաց նա...

Եվ նրա ձայնը դողաց։ Նա մի քանի անգամ հազաց, մի պահ կարծես շփոթվեց, բայց շուտով իրեն հավաքելով շարունակեց։— Ես որոշել եմ այսուհետև բոլոր դասերը լավ սովորել. վատ են վարվել այն ընկերները, որոնք մինչև հիմա հուշել են ինձ... արտագրել են ինձ համար։ Հիմա ես հասկանում եմ, որ նրանք ինձ վնասել են։ Դա օգնություն չէ, այդպիսի օգնությունը ինձ համար վիրավորական է և ես դրանից հրաժարվում եմ։

— Իսկ Նորիկը, նա ի՞նչ պետք է անի,— լսվեց անկյունից Հակոբի զիլ ձայնը։

— Եթե չհուշենք նա էլ ստիպված կլինի սովորել,— բացատրեց Զորիկը։

— Չենք հուշի։

— Չենք արտագրի,— լսվեց ամեն կողմից։

— Ես էլ կսովորեմ, հավատացեք կսովորեմ,— ոտքի կանգնելով ասաց Նորիկը։

Եվ ջոկատը որոշեց ուսման գործը կազմակերպել այնպես, որ բոլոր պիոներները դասը ժամանակին սովորեն և բարձր գնահատականներ ստանան։ Նրանք որոշեցին վերացնել հուշելը։

Այժմ երկու ամիս է անցել ջոկատի այդ հավաքույթից և 6-րդ դասարանում ոչ ոք երկու գնահատական դեռ չի ստացել։

Եվ գիտե՞ք, ինչպես փակեցին քառորդը Գուրգենն ու Նորիկը...

Գուրգենն ու Նորիկը քառորդի վերջում 5 և 4 գնահատականներ ունեին։



# ՀԱՄԵՐԱՇԽ ԸՆՏԱՆԻՔԸ

Գր. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Վաչիկը, Լյուդմիլան և Հուսեյնը ապրում են իրար կից երեք բնակարանում։ Առավոտյան ով ամենից շուտ է արթնանում, լվացվում, նախաճաշում է և վազում մյուսների մոտ։ Օրերը այդ երեխաների համար սկսվում է խաղով, շարունակվում ու վերջանում է խաղով։ Նրանց համար աշխարհը մի ուրախ այգի է և կյանքը երջանիկ խաղ։ Նրանք իրար պատմում են գիշերվա տպավորությունները. Հուսեյնի հայրը մի հետաքրքիր բան է պատմել տանը, Լյուդմիլայի մայրը թերթից հոդված է կարդացել, և կամ թե Վաչիկի մեծ եղբայրն ու քույրը դպրոցում պատահած մի դեպք ավելի գունազարդած հաղորդել ընտանիքին։

Այդ բոլորը երեխաները հաղորդում են միմյանց։

Բայց այդ առավոտյան միանգամից մոռացվեցին բոլոր պատմությունները։

Լյուդմիլան բացեց աչիկները, նայեց լուսամուտից դուրս և ուրախությունից ճչաց.

— Ձյուն է եկել, մայրի՛կ, ձյուն է եկել։

Նա մինչև նախաճաշը հազիվ համբերեց։ Հետո վազեց դուրս, ճանապարհին անհամբերությունից գոռալով և չկարողանալով որոշել, թե առաջ ուր գնա։

— Վաչի՛կ, Հուսե՛յն, ձյուն է եկել, ձյո՜ւն...

Երեխաները հավաքվեցին Վաչիկենց բակը. նրանք ծիծաղում էին, ուրախ թռչկոտում, իրար վրա գցում մաքուր, սպիտակ ձյունը։

Նրանց միացավ Սեդան, բոլորովին մոռանալով, որ ինքը մեծ է։

— Ես շատ լավ գիտեմ ձնե մարդ պատրաստել,— աշխատում էր համոզել նա դպրոց գնալուց առաջ,— սև ածուխով աչքեր, բերան ու քիթ կսարքեմ։

Նրանք խոստացան սպասել Սեդային, բայց անմիջապես մոռացան իրենց խոստումը և սկսեցին աշխատանքը։

Հաստ ու տաք վերարկուի մեջ փաթաթված նստել է Լևոն պապիկը։ Նա ծխում է և նայում իրար հետ համերաշխ խաղացող այդ եռյակին։ Եվ զարմանում է, չի կարողանում ըմբռնել նա, թե ինչո՞ւ, ոչ մի օր իրար հետ չեն կռվում, իրար չեն ծեծում այդ տարբեր ազգությունների պատկանող երեխաները։ Նա հիշում է իր մանկությունը արտասահմանում։ Ահա Ադանա քաղաքի կիսավեր մի



փողոցը տասնյակ տարիներ առաջ։ Խաղում են իրենք, սրանց պես ձնե մարդ սարքում, բայց գալիս են թյուրք երեխաները, ծեծում իրենց, քանդում ձնե մարդն ու ձյունը շպրտում իրենց վրա։ Նա հիշում է Բեյրութը։ Խաղում են պատառոտված շորեր հագած արաբ երեխաները, իսկ մաքուր հագնված ֆրանսիացի տղաները շրջանցելով են գնում փողոցով, որպեսզի չկեղտոտվեն։ Նա հիշում է ամբողջ իր կյանքը և ոչ մի փայլուն էջ չգտնելով այդտեղ, տարվում է իր մտքերով։

Խաղի ամենաեռուն վայրկյանին, երբ համարյա ավարտվում էր ձնե մարդը, Վաչիկը մի բան է հիշում հանկարծ. նա կանչում է իր ընկերներին և ցածր ձայնով հաղորդում.

— Լյուդմիլա՛, Հուսե՛յն, գիտե՞ք գիշերը ես դեռևս չէի քնել, մայրիկն ու հայրիկը

խոսում էին և ես լսեցի. երկու օր հետո պապիկը յոթանասուն տարեկան է դառնում. հայրիկը ուզում է նվեր գնել նրա տարեդարձի առթիվ։

— Իսկ մե՞նք,— չհամբերեց Հուսեյնը,— մենք էլ մի բան նվիրենք պապիկին։

Նրանք մոռացան ձնե մարդն ու սկսեցին պապիկի համար հարմար նվեր որոշել։ Նրանց դեմքերը լրջացել էին, աչքերը խելացի, մտածող արտահայտություն ստացել։

— Երեկ հայրիկն ինձ ասաց, որ նոր տարվա առթիվ, ինձ համար առանձին տոնածառ է գնելու,— հանկարծ ասաց Լյուդմիլան,— ես ձեզ չէի ուզում ասել. ուզում էի, որ հանկարծ իմանաք։ Բայց այ, մեր տո-



նածառին կհրավիրենք նաև պապիկին ու նվերը կտանք այնտեղ, կասենք Ձմեռ պապին է բերել։

— Շատ լավ կլինի, շատ լավ,— ասացին Վաչիկն ու Հուսեյնը միասին, իսկ նոր տարին ե՞րբ է։

Նրանք հաստատ չգիտեին։ Մի րոպե մտածեցին և երեքն էլ վազեցին պապիկի մոտ։

— Լեո՛ն պապիկ,— գոչեցին նրանք, ետևից գրկելով նրան,— Լեո՛ն պապիկ, ե՞րբ է նոր տարին։

Պապիկը կարծես զարթնեց քնից։ Նա զարմացած նայեց երեխաների փայլուն աչքերին և իր մեծ ձեռքերով երեքին էլ գրկեց։

— Ինչո՞ւ համար, բալիկներս,— ասաց նա,— Նոր տարին որ գա, դուք այդ կիմանաք։ Ձմեռ պապին ձեզ նվերներ կբերի։

— Իսկ ե՞րբ, պապի՛կ, քանի՞ օրից,— պնդեցին երեխաները։

Պապիկը հասկացավ, որ նվերից ավելի մի ուրիշ միտք էր զբաղեցնում նրանց։

— Երկու օր հետո,— ասաց նա չուզենալով երեխաներին ավելի հուզել,— երկու օր հետո, գիշերը Ձմեռ պապին կգա և ձեզ համար նվերներ կբերի։

— Երկո՞ւ օրից, ուռա՜,—գոչեցին երեխաները և սկսեցին վազվզել ձյան վրայով, ձնե մարդու շուրջը պտույտ գալով։ Հետո նորից եկան իրար մոտ։

— Մի գիրք կգնենք,— ասաց Լյուդմիլան,— ես մայրիկիս կասեմ, որ մի լավ գիրք գնի պապիկի համար։

— Ես ու Հուսեյնն էլ նոր բահ կգնենք, մի քիչ երկար կոթով. գարնանը պապիկը կսկսի հողը փորել. Թող մեջքը շատ չծռի։

— Եղա՜վ, եղա՜վ...

Նրանք նորից վազեցին, ապա այդ գյուտից գոհ, դարձյալ հավաքվեցին։

— Հիմա գնանք ու պապիկին հրավիրենք,— առաջարկեց Վաչիկը։ Նրանք մոտեցան։

— Դու կասես,— Լյուդմիլային ասաց Հուսեյնը։

— Այո, դու լավ ես խոսում մեծերի հետ,— նրան միացավ Վաչիկը։

Աղջիկն ինքնագոհ ժպտաց։ Նա ձեռքերով ուղղեց խառնված մազերը, շորերը կարգի բերեց։ Երեքն էլ շարվեցին պապիկի դիմաց, որը հետաքրքրված սպասում էր, թե ինչ նոր խաղ են հնարելու նրանք։ Լյուդմիլան մի քայլ առաջ անցավ.

— Պապի՛կ,— հնչեց նրա զիլ ձայնը,— մենք՝ Վաչիկը, Հուսեյնը և ես, երկու օր հետո քեզ հրավիրում ենք մեր տոնածառին, մենք ուզում ենք քո տարեդարձի առթիվ նվեր տալ քեզ։

Տղաները իզուր փորձեցին լռեցնել նրան, ասել, թե նվերի մասին հիմա հարկավոր չէր իմաց տալ. բայց ուշ էր արդեն. Լյուդմիլան շարունակում էր.

— Քեզ համար գիրք և երկար կոթով բահ ենք գնելու։

Նրանք շվարած մնացել էին կանգնած։ Պապիկը երկարեց ձեռքերը և նրանց սեղմեց իր կրծքին։ Ինչքա՜ն լավ, ինչքա՜ն սիրելի էին իրեն այդ սառը քամուց կարմրած երեսները, այդ փայլուն աչիկները։

Նա իր գիրկն առավ երեխաներին և մտածեց, որ մյուսներն էլ, ադրբեջանցի Հուսեյնն ու ռուս Լյուդմիլան հարազատ են իրեն, ինչպես Վաչիկը, իր թոռնիկը։

Լեռն պապիկի աչքերում ուրախության, երջանկության արցունքներ երևացին։

— Կգամ, բալիկնե՛րս,— ասաց նա,— միայն թե դուք այդպես սիրով եղեք իրար հետ, այդպես համերաշխ։



# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Տերևներն են դողում,
Աշունն աչքն է փակում.
Եվ սարերն են շողուն
Կորչում թանձր միգում։

Եվ ձյունում են հերթով
Վեհ լեռները Լոռու
Ու նայում են դեռ ծով
Դաշտերին մեր հեռու։

Արդեն իջել են գյուղ
Սարից հովիվ ու հոտ,
Թողել լանջերը թուխ,
Ճամփաները ծանոթ։

Իսկ դաշտերը ցնծուն,
Ցանված ձեռքով բարի,
Կարծես կանչում են. «Ձյո՛ւն,
Մեզ քուն է պետք, արի՛»։

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԿԱՐՊԱՏՆԵՐՈՒՄ

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Գարնան մի պայծառ առավոտ էր, երբ 100 հոգուց կազմված մեր գիտական արշավախումբը իր գործիքներն ու պաշարը մեքենաներին բարձած, ուղևորվեց դեպի Կարպատյան լեռներ, ծանոթանալու նրա կառուցվածքին, հոյակապ բնությանը և անսպառ հանքային հարստություններին:

Մի քանի ժամից հետո, մենք մոտենում ենք Տրուսկավեցին, որը սաղարթախիտ այգիներով հարուստ մի կուրորտային քաղաք է: Սքանչելի ճանապարհը հարյուրավոր կիլոմետրեր անցնում է մրգատու ծառերի շարքերի միջով: Տրուսկավեց չհասած կանգ ենք առնում ճամփից ոչ հեռու գտնվող մի լճակի մոտ: Լվովի համալսարանի պրոֆեսոր Օ. Ս. Վյալովը բացատրում է էքսկուրսանտներին.



— Տարիներ առաջ այս լճի տեղում հորատման ժամանակ հրդեհ բռնկվեց, սկսեց այրվել գետնի խորքից դուրս եկող նավթային գազը: Մի ամբողջ տարի չէին կարողանում հանգցնել հրդեհը: Ձմռանը գնչուներն իրենց վրանները խփել էին հրդեհի մոտ ու ապահովված էին բնական վառելիքով: Հրդեհը աստիճանաբար նվազեց և հանգավ, իսկ նրա տեղում գոյացավ 150 մետր տրամագիծ և 40 մետր խորություն ունեցող այս լիճը: Գետնից դուրս եկող գազը այս լճի տեղում եղած հողը վեր նետելով ցրել է իր շրջակայքում:

Այնուհետև մեր ճանապարհն անցնում է Դրոգոբիչից Ստրի ձգվող փարթամ անտառով:

Ուշ երեկոյան մենք հասանք հանքերով հարուստ Կալուշ քաղաքը: Իջանք հանքերի խորքերը. անցանք կարմիր քարատեսակների մեջ փորված թունելներով: Այդ կարմիր քարատեսակը կալիումի աղն է, որ շատ կարևոր հումք է քիմիական արդյունաբերության համար:

Հաջորդ օրը սկսվում է մեր վերելքը դեպի Կարպատները: Ճանապարհին մենք հանդիպում ենք Հայրենական Մեծ պատերազմում զոհված սովետական մարտիկների գերեզմանների:

Հայրենական պատերազմի օրերին Երեմչի ջրվեժի մոտ զոհվել է Սովետական Միության Հերոս, պարտիզանական միավորման կոմիսար, գեներալ-մայոր Ռուդնևը: Արշավախմբի անդամները թարմ ծաղկեփնջեր են դնում նրա գերեզմանին:

Կեսօրից անց մենք Վերեցկի լեռնանցքում էինք: Այստեղից երևում են Արևելյան Կարպատների Սև լեռների ամենաբարձր գագաթները՝ Պետրոսը և Գովերլան: Նրանք կազմված են էոցենի հասակի ապառներից, այսինքն 60 միլիոն տարի է, ինչ այնտեղ ծագում ու մայր է մտնում արևը:

Բազմատեսակ ու հարուստ է Անդրկարպատյան բնությունը: Հեռվում, Կարպատների ստորոտներում և գետերի հովիտներում երևում են կանաչի մեջ կորած գյուղերը, իրենց կարմրին տվող կղմինդրե տանիքներով:

Անդրկարպատյան ճանապարհներն անցնում են խիտ անտառների միջով: Այդ անտառներում իրենց հասակով ու գեղեցկությամբ մրցում են շագանակի և ընկույզի վիթխարի ծառերը: Գյուղերում և գետերի հովիտներում աճում են լաստենին, բարդին, ուռենին, թթենին, թզենին, խաղողը: Մի քա-

նի քաղաքների բուսաբանական այգիներում կան էվկալիպտ, դափնի, արմավենի և հավի բուսականության շատ ուրիշ նմուշներ։ Բարձունքներում տարածվում է սաղարթավոր և փշատերև ծառերի խառն անտառը։ 1300 մետր բարձրության վրա սկսվում է հաճարի անտառը։ Խիտ տեղերում այդ ծառերի բարձրությունը հասնում է 30—35 մետրի։ Հաճարի անտառներն այնտեղ մոտավորապես 350 հազար հեկտար տարածություն են բռնում։ Այստեղ բազմաթիվ կոլտնտեսություններ միայն անտառամշակմամբ են զբաղվում։

Հաճարի անտառից ավելի բարձր սկսվում են բոխու, եղևնու և բրկենու անտառները։ Արևելյան Կարպատների գագաթներին անտառներ չկան. այստեղ տարածվում են ալպիական հարուստ արոտավայրերը՝ պոլոնինաները։

Գարնանը, ձյան հալոցքից հետո, երբ արթնանում է բնությունը, ծաղկում է և կյանքը պոլոնինաներում։ Ծաղկած մարգագետինները լցվում են հոտերի բառաչով և հովիվների սրնգի ղայլայլով։ Պոլոնինաներում գարնանը, ամռանը և աշնանը վառվում են խարույկներ։ Այդ խարույկների վառելու պատիվը պատկանում է ավագ հովվին, որին ենթարկվում են պոլոնինայի բոլոր հովիվները։

## ՍՈԼՈՏՎԻՆՈՅԻ ԱՂԱՀԱՆՔՈՒՄ

Կարպատները հարթ ու ցածր լեռներ են, առանց սուր գագաթների ու ժայռոտ ձորերի։ Դրանք հարուստ են բազմաթիվ օգտակար հանածոներով։ Այստեղ կան մարգանեցի, պղնձի, ալունիտի, մարմարի, քարածխի, գիպսի, ֆոսֆորիտների, նավթի, հատկապես կալիինի, աղի և այլ հարուստ հանքավայրեր։

Այն վայրում, որտեղ Ռիկան թափվում է Տիսսա գետի մեջ, գտնվում է Եվրոպայի ամենամեծ աղահանքը՝ Սոլոտվինոն, իսկ մյուս ափում՝ ռումինական Մարմարոշ-Սիգետ քաղաքը։ Երբ մենք Սոլոտվինո էինք մտնում, գետի մյուս ափից գլխարկներով մեզ ողջունում էին ռումինացիները։ Նրանք լայն, կարճ և սպիտակ վարտիքներով զանազանվում էին Սոլոտվինոյի ուկրաինացի և հունգար բնակիչներից։

Անդրկարպատյան Ուկրաինայի արդյունաբերական ամենամեծ ձեռնարկությունը Սոլոտվինոյի աղահանքն է։ Այստեղից տարեկան 150 հազար տոննա աղ է հանվում։ Այդ աղահանքը հայտնի է դեռևս բրոնզե դարից։ Հռոմեական պետության ժամանակվանից այդ հանքավայրը օգտագործվում է։



Լիֆտերով 240 մետր ցած ենք իջնում և մտնում աղահանքի վիթխարի դահլիճները, որոնց բարձրությունը հասնում է մինչև 70 մետրի, իսկ երկարությունը 100 մետրից ավելի է։ Լապտերների լույսից փայլում են ստորերկրյա պալատների հարթ պատերը՝ բազմերանգ զարդանկարներով։

## ԳՈՒՑՈՒԼՇՉԻՆԱՅՈՒՄ

Գուցուլները անդրկարպատյան ուկրաինացիներ են, որ ապրում են Բեսկիդյան լեռներում և Չերնոգորիայում։ Սքանչելի անտառներով են պատած Գուցուլշչինայի լեռները։ Պրուտ, Վորոխտա, Յարեմչա և Դորա գետերի նեղ հովիտներում կանաչի մեջ կորած են գուցուլների խրճիթները։ Սև Տիսսայի վրա է գտնվում գուցուլական Յասինյա գյուղը։ Դա ունի երեք հազար տուն։ Գյուղի երկարությունը 14 կիլոմետր է։ Գուցուլներն անցյալում կերակրվում էին գերազանցապես եգիպտացորենից պատրաստած կերակուրով։ Իսկ այժմ շատ է լավացել գուցուլի կյանքը։

Գուցուլը շատ է սիրում բնտանի կենդա-

ռիներին, բայց նրա ամենասիրած կենդանին և աշխատանքի ընկերը ձին է։

Գուցուլները բարձրահասակ են, թիկնեղ ու թխահեր։ Նրանք ազատասեր են, հպարտ և հերոսաբար կռվող։ Շատ ինքնագործ խմբակներ ունեն, իսկ տոն օրերին նրանց շուկան լիքն է լինում լարախաղացներով։ Գուցուլները շատ են սիրում գործել ու փորագրել։ Նրանց տնային գործածության իրերը և գործիքները՝ լուծը, ։իլիկը, դռները, տակառները պատած են փորագրական արվեստի շատ նուրբ գործերով։

Արտակարգ հետաքրքիր է գուցուլի տարազը։ Տղամարդիկ հագնում են սպիտակ ուկրաինական բլուզներ, որոնց փեշերն ու վիզը զարդարված են գեղեցիկ գործվածքներով, իսկ բլուզի վրա կրում են մորթուց պատրաստված անթև աբա։ Գլխներին դնում են աքաղաղի և այլ թռչունների փետուրներով զարդարված գլխարկներ։ Կանայք հագնում են սպիտակ շրջազգեստներ և կրում գույնզգույն գոգնոցներ, իսկ դրանց վրա՝ ոչխարի մորթուց կարած նախշուն աբաներ։ Նրանք ամառ թե ձմեռ գլխաբաց են։

Գուցուլները գլխավորապես լաստեր և գերաններ են տեղափոխում Տիսսա, Տերեբլյա և Պրուտ գետերով։ Գետերը կատաղի են։ Այդ պատճառով լաստեր վարելը դժվար և վտանգավոր գործ է։ Բավական է արագահոս գետի շրջապտույտի մոտ լաստը ընդհարվի ժայռերին, որպեսզի վերածվի տաշեղների կույտի և իր հետ էլ կործանի լաստավորներին։ Բայց գուցուլները շատ ճարպիկ են և համարձակ և այդպիսի դեպք չի պատահում։

## ԱՆԴՐԿԱՐՊԱՏՅԱՆ ԱՅՍՕՐ

Սովետական Անդրկարպատիայի տերիտորիան 12 հազար 900 քառակուսի կիլոմետր է։ Շատ առաջ այդտեղ եղել են սլավոնական ժողովուրդների բնակավայրեր, իսկ այժմ ապրում է 900 հազար բնակիչ։ Դրանք կազմված են երեք ազգային խմբերից՝ գուցուլներից, բոյկիներից և լիմկիներից, որոնք իրարից տարբերվում են լեզվով ու կենցաղով։ Դրանց զբաղմունքն է անասնապահությունը, այգեգործությունը, հացահատիկների մշակույթը և գլխավորապես անտառամշակումը։

Հունիսի սկզբի օրերին էր, երբ մենք,



անցնելով խաղողի այգիներով պատած բլուրները, մտանք Բերեգովո քաղաքը։

Բերեգովոյի բլրաշարքից երևում է պաննոնական կամ հունգարական անծայրածիր հարթությունը, որը հունգարացիներն անվանում են կաքի ու մեղրի երկիր։ Տիսսան այդ հարթավայրը ողողելով հասնում է Դանուբին ու գնում խառնվելու Սև ծովի ջրերին։ Այդտեղ, Լատորիցա գետի ափին, կառուցված է Մուկաչովո քաղաքը։ Այդ հին առևտրական կենտրոնն այժմ արդյունաբերական կենտրոն է դառնում։ Այստեղ այժմ կան ծխախոտի, նավթաթորման, մակարոնի,

հրուշակեղենի գործարաններ և այլ ձեռնարկություններ:

Սվալյավա և Մեծ Բոչկովա քաղաքներում քիմիական գործարանները փայտից պատրաստում են սպիրտ, քացախաթթու, ացետոն, կանիֆոլ և այլն: Կան նաև փայտամշակման, մետաղամշակման, աղյուսի և կաշվի բազմաթիվ այլ գործարաններ:

Ուժգորոդը մի բարեկարգ, կանաչազարդ քաղաք է:

Քաղաքից քիչ հեռու Ուժ գետի ափին գտնվում են կառլինի՝ սպիտակ կավի հանքերը, որտեղից անցյալում հումքը տարվում էր վիեննական ճենապակու համար: Այժմ այդ բարձրորակ կավը ծառայում է որպես տեղական արդյունաբերության հումք:

Ուժգորոդում մենք եղանք պետական համալսարանում: Այս համալսարանն ընդամենը մի քանի տարեկան է: Սովետական իշխանության օրոք կարպատյան ժողովուրդը առաջին անգամ համալսարան ունեցավ:

Ուժգորոդի պատկերասրահում մենք դիտեցինք նկարիչ Բոռեցկու մի նկարը: Նկարիչը պատկերել է իր գեղեցիկ ու հպարտ ժողովուրդը, որ դարեր շարունակ սովոր է ազնիվ աշխատանքի և միշտ խոր հավատով է նայել իր ապագային:

Մի քանի օր հետո հրաժեշտ տվինք Անդրկարպատյան երկրի հրաշալի ժողովրդին և անջնջելի տպավորություններով վերադարձանք մեր տեղերը:

# ՄԻ ՍԱՅԼԱԿԸ ՀԻՆԳ ՂՈՒՌՈՒՇ[1]

ՍԱԲԱՀԱՏՏԻՆ ԱԼԻ
(Թյուրք գրող)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*Երեկոյան, երբ փողոցները հատկապես բազմամարդ դարձան, մեծ խանութի անկյունին մոտեցան մի կին ու մի երեխա։*

*Կինն ամուր փաթաթվել էր չարսավով[2] և միայն աչքերն էին երևում։ Նա, պպզելով գետնին, փոքրիկ պարկից խաղալիքներ հանեց։ Դրանք սայլակներ էին։ Անիվներին ամրացված էր չորս ձողից պատրաստած ինչ-որ տաղավարի նման մի բան, որը դրրված էր երկու կլոր թիթեղների արանքում։ Երբ այդ սայլակներից մեկը ընթանում էր, տաղավարն սկսում էր արագ-արագ պտտվել։*

*Կինը խաղալիքները դասավորեց գետնի վրա և տղան սայլակներից մեկը ձեռքն առնելով, սկսեց բարակ ձայնով կանչել.*

*— Մի սայլակը՝ հինգ ղուռուշ... Մի սայլակը՝ հինգ ղուռուշ...*

*Կինն ու տղան այստեղ պետք է մնային այնքան ժամանակ, մինչև որ փողոցները դատարկվեին։*

*Տղան ութ տարեկան էր, բայց առաջին հայացքից ոչ ոք վեցից ավելի չէր տա, որովհետև նա փոքր էր ու նիհար։*

*Այդ ցեխոտ մայթից քիչ հեռու, ուր դրրված էին սայլակները, փայլում էին մեծ խանութի ցուցափեղկերը։*

*Անցորդների ուշադրությունն իսկույն գրավում էին աչք ծակող ծաղկավոր փողկապները, շքեղ ճարմանդներով զարդարուն գոտիները, բամբակե բաճկոնները, ձեռնոցները, թանկարժեք խաղալիքները և շատ ուրիշ իրեր։*

*Մարդիկ, նայելով խանութի ցուցափեղկին, այլևս ուշադրություն չէին դարձնում փայտե սայլակներին։*

*Բայց փոքրիկ վաճառորդը շարունակում էր կանչել.*

*— Մի սայլակը՝ հինգ ղուռուշ... Մի սայլակը՝ հինգ ղուռուշ...*

***

*Խանութին մի ավտոմեքենա մոտեցավ։ Գեղեցիկ հագնված մի գեր կին՝ ութ-ինը տարեկան տղայի հետ մեքենայից դուրս եկավ։ Երեխան գլխին ուներ սպիտակ բերետ, ոտքերին՝ գետրիներ։ Նա մուգ-երկնագույն վերարկու էր հագել։ Նրանք ներս մըտան։ Քիչ հետո տղան դուրս եկավ փողոց և սկսեց նայել ցուցափեղկի խաղալիքներին։*

*— Մի սայլակը՝ հինգ ղուռուշ...*

*Մուգ-երկնագույն վերարկուով տղան շուռ եկավ ու տեսավ փոքրիկ վաճառորդին։*

*— Ա-ա-ա... Սայլակնե՞ր ես ծախում...*

[1] Ղուռուշ—պղնձե դրամ։

[2] Չարսավ—ծածկոց։

— Մայրիկը մենակ չի կարող գալ, հետո չի կարող բարձր կանչել... Այ, դրա համար եմ եկել...

Մուգ-երկնագույն վերարկուով տղան ձեռքը գրպանը տարավ ու դուրս քաշեց թղթե մի փոքրիկ պարկ։ Նա այնտեղից մի բուռ մաքրված նուշ հանեց ու դրեց բերանը։ Մի նուշ էլ տվեց փոքրիկ վաճառորդին։

— Դասերդ ե՞րբ ես պատրաստում,— հարցրեց մուգ-երկնագույն վերարկուով տղան։

— Երբ դպրոցից տուն եմ վերադառնում, երկու ժամ պարապում եմ, դասերս սովորում։ Հետո մայրիկիս հետ գալիս եմ այստեղ։ Ախր ես չեմ կարող երեկոները դաս պատրաստել, մենք փող չունենք նավթի համար։



— Մեր ուսուցչին տեսա՞ր։ Նա հենց նոր այստեղ եկավ։

— Նա գիտե, որ ես սայլակներ եմ վաճառում։

Փողոցում երևացին կանայք՝ իրենց երեխաների հետ։ Փոքրիկ վաճառորդը զրույցն ընդհատեց և սկսեց կանչել.

— Մի սայլակը՝ հինգ ղուռուշ...

Երեխաները կանգ առան։ Փոքրիկ վաճառորդի մայրը տխուր նայում էր նրանց։

— Իսկ դու թվաբանական խնդիրը լուծե՞լ ես,— հարցրեց մուգ-երկնագույն վերարկուով տղան։— Ես տանը շատ չարչարվեցի... չարչարվեցի... Լավ է երեկոյան հայրիկիս խնդրեմ...

— Ինչո՞ւ, չէ՞ որ շատ հեշտ է... Եվ տղան սկսեց բացատրել, թե ինչպես պետք է խնդիրը լուծել։

Նրանք այնպես էին զրուցում, որ փոքրիկ վաճառորդը նույնիսկ մոռացել էր իր սայլակները։ Մուգ-երկնագույն վերարկուով տղան սեղմեց իր դպրոցական ընկերոջ ձեռքը։

— Գիտե՞ս ինչ, ես դասատուին կասեմ, որ մեզ նույն նստարանին նստեցնի։ Մենք միասին կսովորենք։

— Բայց չէ՞ որ իմ կողքին նստող կա և նա չի զիջի իր տեղը։ Ես էլ չեմ կարող նրանից բաժանվել։ Մենք միևնույն փողոցում ենք ապրում, նա էլ ինձ նման աղքատ է...

«Ես նրան կհեռացնեմ ու նրա տեղը հարուստի երեխա կնստի»,

փորձեց ավելացնել տղան, բայց սկսեց մտածել։

Այդ պահին մի զուգված կին խանութից դուրս եկավ ու չորս կողմը նայեց։ Նրա ձեռքին շատ փաթեթներ կային։ Մոտ վազող շոֆերը նրա ձեռքից իրերն առավ ու տեղավորեց մեքենայի մեջ։

Կինը շուրջը նայեց։ Երբ նա տեսավ փոքրիկ վաճառորդի կողքին կանգնած իր տղային, քարացավ։ Նա փութկոտ քայլերն ուղղեց դեպի որդին։ Տղան տեսնելով կատաղած մորը, մի կողմ քաշվեց։

Փոքրիկ վաճառորդի մայրը գլուխը բարձրացրեց ու երկյուղով կնոջը նայեց, որը հագել էր մորթիով վերնազգեստ և օձի կաշվից պատրաստած կոշիկներ։ Զուգված կինը մոտեցավ ու բռնեց որդու ձեռքը։

— Սա ի՞նչ է նշանակում,— գոչեց կինը,— ո՞ւմ հետ ես խոսում,— և հովանոցով խփեց փոքրիկ վաճառորդի ուսին,— քրջո՛տ, մի քեզ նայիր, միթե՞ տղաս քո ընկերն է...

Փոքրիկ վաճառորդի աչքերը ցավի ազդեցությամբ լցվեցին։ Մայրը նրան տարավ պատի կողմը։

— Մայրի՛կ, նա իմ դպրոցական ընկերն է...,— ասաց մուգ-երկնագույն վերարկուով

*տղան, բայց կինը կարմրեց ու տղային լռեցրեց։*

*— Հենց վաղը դպրոց կզանգահարեմ։ Ես նրանց ցույց կտամ, թե ինչպես են ընդունում բրջոտներին...*

*Կինը բռնելով տղայի ձեռքը, քաշվեց դեպի մեքենան։*

*Իսկ փոքրիկ վաճառորդը սկսեց բարակ ու դողդոջուն ձայնով կանչել.*

*— Մի սայլակը՝ հինգ ղուռուշ... Մի սայլակը՝ հինգ ղուռուշ...*

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*

# ՍԵՓԱԿԱՆ ՁԵՌՔԵՐՈՎ

## ԱՌԱՐԿԱՅԱԿԱՆ ԽՄԲԱԿՆԵՐՈՒՄ

Գեղեցիկ կահավորված կաբինետում ամեն ինչ իր տեղն ունի։ Ֆաբրիկաներում պատրաստված գործիքները առանձին պահարաններում են դրված, ինքնաշեն գործիքները՝ առանձին, սակայն միայն ուշադիր նայելուց հետո կարելի է տարբերել, թե ո՞ր գործիքն է ինքնաշեն, որը ֆաբրիկայում պատրաստված։ Դա Երևանի Սուրեն Սպանդարյանի անվան դպրոցի ֆիզիկայի կաբինետն է։

Դպրոցում բազմաթիվ խմբակներ են գործում — ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության, պատմության, լեզվի ու գրականության, ֆիզկուլտուրայի, ռադիոսիրողների։

Այդ խմբակներում մեծ թվով աշակերտներ են ընդգրկված։ Բոլորն էլ զեկուցումներ ու ռեֆերատներ են կարդում, փորձեր են կատարում, ինքնաշեն գործիքներ պատրաստում։

Երբ Պիոներների պալատում, պատանի տեխնիկների կենտրոնական կայանում ցուցահանդեսներ են կազմակերպվում, Սպանդարյանի անվան դպրոցի պատանի ֆիզիկոսներն ու տեխնիկները միշտ առաջնություն են շահում։

Դպրոցի ֆիզիկայի լաբորատորիայում բազմաթիվ մոդելներ կան՝ էլեկտրոմոտոր, շոգեմեքենայի մոդել, վոլտմետր։ Այդ բոլորը պատրաստել է խմբակի անդամ Ժորա Մնացականյանը։ Երբ ֆիզիկայից անցնում էին էլեկտրոմոտորների թեման, Ժորայի պատրաստած էլեկտրոմոտորը օգնեց, որ աշակերտներն ավելի խորը յուրացնեն դասը, հասկանան թե ինչո՞ւ է պտտվում մոտորի խարիսխը, կամ ի՞նչ դեր է կատարում խարիսխի կոլեկտորը՝ կիսօղակները։ Շուտով Ժորան դպրոցում ղեկավարելու է պատանի կոնստրուկտորների խմբակի աշխատանքները։

Այդ խմբակում աշակերտները պատրաստելու են էլեկտրաշարժիչների, շոգեմեքենաների մոդելներ և այլ ինքնաշեն գործիքներ։

Հետաքրքիր աշխատանքներ է կատարում քիմիայի խմբակը, որի պարապմունքները և էքսկուրսիաները հնարավորություն են տալիս է՛լ ավելի լավ յուրացնելու առարկան, ճանաչելու մեր երկրի հզոր արդյունաբերությունը և նրա նվաճումները։

Դպրոցի քիմիայի խմբակը սերտ կապ է պահպանում Գյուղատնտեսական ինստիտուտի քիմիայի ամբիոնի հետ, հաճախ խմբակի անդամները փորձեր են կատարում ինստիտուտի լաբորատորիայում։

Դպրոցի միջանցքներում, դասարանների պատուհաններին զանազան տեսակների ծաղիկներով գեղեցիկ ծաղկամաններ են դրված։ Բնագիտական անկյունում բազմաթիվ բույսեր են աճում։ Բոլորը երեխաների ձեռքի գործն է։

Պատանի բնասերներին հայտնի են Իվան Վլադիմիրովիչ Միչուրինի խոսքերը՝ «Մենք չենք կարող բնությունից շնորհներ սպասել, մեր խնդիրն է՝ դրանք վերցնել նրանից»։

Եվ իրոք իրենց փոքրիկ աշխատանքներով, դպրոցում ձեռք բերած խորը գիտելիքներով, պատանի բնասերները ճանաչում են բնությունը, պատրաստվում են բնությանն իրենց ենթարկելու։ Սպանդարյանի անվան դպրոցի բնագիտական խմբակն իր աշխատանքներով անցյալ ուսումնական տարում ռայոնական ցուցահանդեսում գրավել է առաջին տեղը։

*Ռ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ՊԱՏԱՆԻ ՆԱՎԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԸ

Երբ Գրիգոր Պալյոզյանը ընդունվեց Պիոներների պալատի նավաշինարարական խմբակը, շուտով իր աշխատասիրության և ընդունակության շնորհիվ գրավեց խմբակի ղեկավարի և ընկերների ուշադրությունը։ Նրա պատրաստած մոդելներն իրենց ճշտությամբ և գեղեցկությամբ իսկույն աչքի ընկան։

Մի տարի հետո Գրիգորը մեկնեց Մոսկվա՝ դպրոցական նավամոդելիստների համամիութենական մրցումներին մասնակցելու։

Մոսկվայից վերադառնալով Գրիգորն իրենց դպրոցում նավաշինական խմբակ կազմակերպեց։

Եվ ահա երեք տարի է, ինչ Երևանի 51-րդ դպրոցում գործում է նավաշինական խմբակը Գրիգոր Պալյոզյանի ղեկավարությամբ։

Այդ խմբակում տասնյակ աշակերտներ են ընդգրկված։ Նրանք բազմաթիվ նավամոդելներ են պատրաստել, որոնք ռայոնական մրցություններում առաջին տեղն են գրավել։ Այժմ խմբակն ավելի է աշխուժացրել իր աշխատանքները։ Առագաստանավերի ու նավակների մոդելներից պատանի մոդելիստներն անցել են ավելի բարդ նավերի պատրաստմանը։ Օրեցօր բարձրանում է նրանց վարպետությունը։

*Ռ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

*(Երևանի 51-րդ դպրոցի աշակերտ)*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

### Տասնվեց եռանկյունի

Նկարում պատկերված է մի քառանկյունի՝ բաժանված 16 մանր եռանկյունիների: Այդ եռանկյունիների մեջ 1-ից մինչև 16 թվանշանները տեղավորեցեք



այնպես, որ 4 եռանկյունուց կազմված ամեն մի մեծ եռանկյունու թվանշանների գումարը հավասար լինի 34-ի:

### Ինչպե՞ս երկարացնել տախտակը

Գրքերի դարակ պատրաստելու համար հարկավոր է մի տախտակ, որի երկարությունը պետք է հավասար լինի 1 մետրի, իսկ լայնությունը՝ 20 սանտիմետրի: Իսկ վարպետն ունի մի տախտակ 75 սմ. երկարությամբ և 30 սմ. լայնությամբ: Ի՞նչ պետք է անել:



Կարելի է եղած տախտակի կողքից ամբողջ երկայնքով 10 սմ. լայնությամբ մի շերտ կտրել հանել: Հետո այդ շերտը բաժանել 25 սանտիմետրանոց 3 հավասար մասերի (նկարում նշված է կետագծերով): Այդ մասերից 2-ը կցել և միացնել տախտակի ծայրին (նկարի ներքևի մասում): Բայց խնդրի այդպիսի լուծումը նպատակահարմար չէ (երեք անգամ կտրել և երեք անգամ կպցնել): Բացի դրանից ամուր չի լինի կպցրած մասը: Մտածեցեք մի ուրիշ նպատակահարմար ձև, որի միջոցով երեք անգամ կտրելով և մեկ անգամ կպցնելով հնարավոր լինի տախտակը երկարացնել:

### Խ ն դ ի ր

Աշակերտը տանը խնդիր էր լուծում: Նա մի թիվ պետք է բաժաներ 4-ի և ստացած քանորդին ավելացներ 15: Բայց, անուշադրության հետևանքով նա այդ թիվը ոչ թե բաժանեց 4-ի, այլ բազմապատկեց 4-ով և ստացած արտադրյալից հանեց 15:

Երբ աշակերտը նկատեց իր սխալը, զարմացավ: Գործողության արդյունքը նույնն էր ստացվել, ինչպիսին պետք է ստացվեր առաջին դեպքում:

Կարո՞ղ եք ասել՝ աշակերտը ի՞նչ թվի հետ գործողություն կատարեց:

### Տեսողության պատրանք



Թվում է, թե այս գծանկարի երկայնական զույգ գծերն աղեղնաձև են: Այնինչ իրականում նրանք իրար զուգահեռ են: Ստուգեցեք և համոզվեցեք:

### Հանելուկներ

Թռչում եմ ես, բայց ծիտ չեմ,
Բեռ եմ կրում, բայց ձի չեմ:
Հապա, ասեք, ես ի՞նչ եմ:

---

Ես անկրակ ու պաղ եմ,
Բայց մոտենաս, կդաղեմ:

---

Գալիս է ու չի պրծնում,
Գնում հետքը չի կորցնում:

### Կլոր բնիկ մեջը թռչնիկ

Ճերմակ, անդուռ իր բնում
Մի սիրուն ծիտ է քնում:
Մեկ էլ զարթնում է քնից,
Չանձրանում է նեղ բնից.
Ու կլորիկ վանդակում,
Սուր կտուցով թակթակում,
Երդիկ ու դուռ է ծակում,
Դուրս է թռչում, սլվլում,
Անուշ-անուշ ճլվլում:

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԿՈՆԿՈՒՐՍԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*Մեր ամսագրի խմբագրությունը ապրիլին աշխարհագրական խնդիրների ռեսպուբլիկական կոնկուրս հայտարարեց։ Այդ կոնկուրսի պայմանների համաձայն լավագույն պատասխանների համար սահմանված էին մրցանակներ։*

*Կոնկուրսն անցկացնող հանձնաժողովը քննության առնելով խմբագրությանն ուղարկված հարյուրավոր պատասխանները որոշեց.*

**ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՄՐՑԱՆԱԿ** *(աշխարհագրական արժեքավոր պիտույքներ) տալ հետևյալ աշակերտներին.*

1. Վալերի Մաշուրյանին *(Երևանի Չերժինսկու անվան դպրոցի 7 գ դասարանի աշակերտ).*

2. Ջուլիետա Պապիկյանին *(Ալավերդու շրջանի, Ուզունլար գյուղի № 1 միջնակարգ դպրոցի 7-րդ ա դասարանի աշակերտուհի).*

3. Ֆրիկ Մամոյանին *(Հոկտեմբերյանի շրջանի Մրգաշատ գյուղի դպրոցի 6-րդ բ դասարանի աշակերտ)։*

**ԵՐԿՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄՐՑԱՆԱԿ** *(«Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 1 տարի ժամանակով) տալ հետևյալ աշակերտներին.*

1. Հովիկ Դավթյանին — *Ալավերդու շրջանից.*

2. Գևորգ Ժամկոչյանին — *Աբովյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ.*

3. Ալբերտ Սառոյանին — *Մարտունու շրջանի Մարտունի գյուղի միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ.*

4. Գրետա Հակոբյանին — *Երևանի Բերիայի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի.*

5. Շահվալադ Խաչատրյանին — *Երևանից.*

6. Սուսաննա Գրիգորյանին — *Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի.*

7. Վանուհի Սառոյանին — *Արտաշատի շրջանի Դվին գյուղի № 1 միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի։*

**ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄՐՑԱՆԱԿ** *(«Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 6 ամիս ժամանակով) տալ հետևյալ աշակերտներին.*

1. Համլետ Համազասպյանին — *Երևանի Ռուսթավելու անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ.*

2. Վալտեր Կարապետյանին — *Սևանի շրջանի Դդմաշեն գյուղից.*

3. Սոսիկ Ղզրոյանին — *Թալինի շրջանի Ն. Սասունաշեն գյուղի միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի.*

4. Վալերիա Հովհաննիսյանին — *Երևանի Բերիայի անվան միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի.*

5. Ռաուլ Մկրյանին — *Երևանի Աբովյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ.*

6. Հրաչիկ Սարգսյանին — *Ախուրյանի շրջանի Սարիար գյուղի 7-րդ դասարանի աշակերտ.*

7. Ալբերտ Հակոբյանին — *Երևան, Աղամյանի փողոց, № 6.*

8. Սիմակ Գալստյանին — *Կոտայքի շրջանի Հրազդան գյուղի միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ.*

9. Ջյուլիկ Սարգսյանին — *Երևանի 44-րդ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի.*

10. Արմեն Անանյանին — *Նոյեմբերյանի միջնակարգ դպրոցից.*

11. Ռուբիկ Խառազյանին — *Երևանի 67-րդ դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ։*

ԿՈՆԿՈՒՐՍԻ ԺՅՈՒՐԻ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*
*ՎՖ 07842. Պատվեր 622. տիրաժ 5000, Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 16/XII—1952 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*




## ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ԺՈՂՈՎՐԴԻ ՏՈՆԸ

1945 թվականին հիտլերյան Գերմանիայի դեմ Սովետական Բանակի տարած հաղթանակի շնորհիվ, ռումինական ժողովուրդն իր բանվորական պարտիայի ղեկավարությամբ տապալեց ֆաշիստական դիկտատուրան, կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը և երկրում հաստատեց դեմոկրատական կարգեր:

Նոր կարգերի ժամանակ զարկ տրվեց ծանր արդյունաբերությանը: Այժմ Ռումինիան ունի մետալուրգիական, մեքենաշինական, ածխի, նավթի զարգացած արդյունաբերություն:

Ժողովուրդը աշխատում է Դանուբ-Սևծովյան ջրանցքի և այլ կառուցումների վրա: Մոսկվայից և Սովետական Միության մյուս քաղաքներից Ռումինիա եկան փորձված ինժեներներ: Ռումինական բանվորների հետ միասին նրանք Դոբրուջայի կենտրոնում կառուցեցին ջերմային էլեկտրակայան: Այդ էլեկտրակայանի համար մեր գործարանները պատրաստել էին աշխարհում ամենակատարելագործված սարքավորումը:

Ռումինիայում չկա մի կառուցում, հանքավայր կամ գործարան, որտեղ չկիրառվի սովետական տեխնիկան կամ սովետական առաջավորների փորձը:

Երբ ժողովուրդն իշխանությունն իր ձեռքը վերցրեց, հողը կալվածատերերից անցավ նրան: Մանր և միջին գյուղացիները փորձով տեսան և համոզվեցին, թե ինչքան օգտավետ է աշխատել միասին: Եվ նրանցից շատերը կամավոր կերպով մտան կոլեկտիվ տնտեսությունները: Այդ տնտեսությունները հետզհետե շատացան: Այժմ նրանց թիվը հասնում է մոտ 1400-ի: Դրանից բացի կան 900 համատեղ հողամշակման ընկերություններ:

Ռումինական ժողովուրդը երջանիկ կյանք է կառուցում: Այժմ բոլոր աշխատավորների երեխաները սովորում են դպրոցներում: Ռումինական ժողովրդի առաջնորդ Գ. Գեորգիու-Դեժը, ժողովրդական Կառավարությունը սիրով հոգ են տանում փոքրիկ քաղաքացիների մասին:

Պիոներական հոյակապ պալատները, լուսավոր դպրոցները, մանկական գրադարանները, պիոներական ճամբարները տրամադրված են ռումինական երեխաներին:

Ռումինական խաղաղասեր ժողովուրդը բարեկամական անխզելի կապերով կապված է Սովետական Միության, դեմոկրատական երկրների ժողովուրդների հետ և նրանց հետ կառուցում է սոցիալիզմ:

1952 թվականի դեկտեմբերի 29-ին լրացավ Ռումինիայում ժողովրդական ռեսպուբլիկա հռչակվելու հինգ տարին:

## ՀԱՅՆՐԻԽ ՀԱՅՆԵ

*(Ծննդյան 155 տարին)*

Գերմանիայում ֆաշիզմի տիրապետության դաժան տարիներն էին: Հիտլերականները կործանում էին կուլտուրայի հուշարձանները, այրում առաջավոր գրողների ու գիտնական-



ների գործերը: Դրանց թվում նրանք այրում էին նաև գերմանական մեծ բանաստեղծ Հայնրիխ Հայնեի ստեղծագործությունները, նրա հատորները նետում էին խարույկները, կործանում նրա արձանները: Ուզում էին Հայնեի անունը ջնջել գերմանական գրականությունից: Բայց ֆաշիստները սխալվեցին: Հայնեն պետք է ապրեր:

Այժմ մեծ բանաստեղծն իր անմահ ստեղծագործություններով օգնում է առաջավոր մարդկությանը և գերմանական ժողովրդին ազատության համար մղվող պայքարում:

Հայնրիխ Հայնեն ծնվել է 1797 թվին Գերմանիայի Դյուսելդորֆ քաղաքում, աղքատ ընտանիքում: Սկզբնական կրթությունը ստացել է Դյուսելդորֆի լիցեյում: Այնուհետև սովորել է Բոննի, ապա Գետինգենի համալսարանում: Այդ տեղերում նա իրավունք էր ուսումնասիրում: Բայց համալսարանն ավարտելուց հետո նա ոչ թե իրավաբան դարձավ, այլ բանաստեղծ:

Հայնեին համաշխարհային հռչակ բերեց «Երգերի գիրքը»: Նա գրեց նաև «Ճամփորդական պատկերները», որտեղ խստությամբ հարձակվում էր գերմանական հետամնաց իրականության վրա:

1843 թվին Հայնեն Փարիզում ծանոթանում է Մարքսի հետ, որը մեծ ազդեցություն է գործում նրա վրա: Այդ ազդեցությամբ նա գրում է մի շարք բանաստեղծություններ և պոեմներ: Նա բողոքում է անհավասարության, խավարի դեմ: Հայնեն կոչ է անում ռևոլյուցիա կատարել, իսկ իրեն համարում է ռևոլյուցիայի թմբկահարը:

1844 թվին Սիլեզիայում բռնկվեց ջուլհակների ապստամբությունը: Հայնեն գրեց «Սիլեզյան ջուլհակները» նշանավոր բանաստեղծությունը, որի մեջ հին, մեռնող Գերմանիային անեծք էր ուղղում.

Մռին աչքերում արտասուք չկա,
Նստած դժնդեմ գործում են
նոքա,—
Գերմանիա՛, մենք քեզ պատանք
ենք գործում,
Թունոտ ու քինոտ անեծքով լցուն.
Գործում ենք, գործում...

Այստեղ նա ապստամբներին դիտում է որպես հին, կապիտալիստական կարգերի գերեզմանափորներ:

Հայնրիխ Հայնեն մինչև իր կյանքի վերջը եղավ «մարդկության ազատության պայքարի քաջ զինվոր»: Նա մեռավ 1856 թվին:

# ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



Չեխական աշակերտուհիներից մեկը պիոնե-րական վզկապ է կապում սովետական գրող Բորիս Պոլևոյի վզին:



Բուլղարական Պլովդիվ քաղաքի գրքի ցուցա-հանդեսի մանկական բաժնում:



Կորեական Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայում երեխաները օգնում